ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Թւ. 12

# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Գր. ԽԱԼԱԹԵԱՆ

ՈՒՍՈՒՑԻՉ ՀԱՅԵՐԷՆԻ Ի ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

# ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԺԷ.

## ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

*Գր. ԽԱԼԱԹԵԱՆ*

ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ ՀԱՅԵՐԷՆԻ Ի ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ԱԶԴ

Զենոբ Գլակի տարօրինակ դերը մեր գրականութեան պատմութեան մէջ չէր կարող նկատուած չը լինել բանասէրներից. սակայն Մ. Էմինի[1], Հ. Զարբհանալեանի[2], Գուտշմիդի[3] եւ Լանգլուայի[3] գրուածների ազդեցութեամբ՝ կարծես, աւելի հաստատուեց Զենոբի հարազատութեան խնդիրը: Վերջերս լոյս տեսած մի երկու պատմական հետազօտութիւններից յետոյ, որոնք շարունակում են պնդել "Տարօնոյ Պատմութեան„ վաւերականութեան վերայ, հարկ էր, իմ կարծիքով, նորից աչքէ անցընել նորա բնագիրը, եւ՝ այս անգամ, համեմատութեամբ հնագոյն հայ մատենագիրների հետ:

Ներկայ աշխատութիւնը մի փորձ է այդպիսի համեմատական ուսումնասիրութեան: Բայց պէտք չէ կարծել, որ Զենոբի ի ս կ ա կ ա ն աղբիւրների շարքը սպառվում է իմ յիշած հեղինակներով. — Ագաթանգեղ, Բուզանդ, Սեբէոս, Խորենացի, Ս. Յակոբայ Վարքը. — հետագային բաղդատութիւնը գուցէ առաջ բերէ եւ այլ մանր փոխառութիւններ[4]:

Առաջիկայ հրատարակութիւնը կազմուած է ամբողջապէս այն յօդուածներից, որոնք լոյս են տեսել Զենոբ Գլակի մասին "Հանդէս Ամսօրեայ„ թերթում (1893, Թ. 3, 4, 5, 8 եւ 9), առանց փոփոխութեան:

Գ. Խ.

---

[1] "Ճռաքաղ" ամսագիր, 1859, էջ 167—174, 300—304. 1860—1861, էջ 30—34, յօդուած Մ. Էմինի փոխադրեց գրաբարից Զ. Մ.։

[2] Պատմ. Հայկր. Դպր. Հատոր I, տպ. Ա. (1865) եւ Բ (1886), Վենետիկ։

[3] Տես ստորեւ։

[4] Օր. Փարպեցուց է առած թուում Զենոբի "Հիւսիսային արքայի„ անունը Գդիհոն, որ անշուշտ ձեւափոխութիւն է նորա Սիւնեաց իշխան Գդեհոն անուան։

# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾՔ

| սխալ է. | ուղիղ. |
|---|---|
| Էջ 1, տող 18 վեր. Զ.ի գրուածը արդարեւ Ի. դարու մի հայի կարկատանք համարելու է։ | Զ.ի գրուածը գոնէ Ի. դարու մի հայի կարկատանք համարելու է, եթէ ոչ աւելի եւս յետին Ը.—Թ. դարու գործ։ |
| Էջ 1, տող 7 ներք. E. v. Prud'homme | Ev. Prud'homme |
| Էջ 2, տող 13 վեր. տեղաւորում | տեղաւորում եմ |
| Էջ 3, տող 20 վեր. Է. դարում. | Է.—Թ. դարում |
| Էջ 33, տող 2 ներք. իբրեւ մեծ Տրդատի ժամանակակից չէր կարող | իբրեւ մեծ Տրդատի ժամանակակից, ինչպէս ինքն է իրեն անուանում, չէր կարող |
| Էջ 44, տող 2 վեր. հօրն Տրդատայ | հօրն Տրդատայ |
| Էջ 47, տող 2 ներք. Մոփս-սիսի | Մոփսիսի |
| Էջ 49, տող 3 վեր. առել են են | առել են |
| Էջ 61, տող 12 ներք. Ա,յլ 12 | Ա,յք 12. |



# ԶԵՆՈԲ ԳԼԱԿ

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

Նկատողութեան առնելով որ Զենոբ Գլակ կոչուած մատենագրի հիմնաւոր քննութեան եւ նորա հետ կապուած կարեւոր խնդիրների վերջնական լուծմանը շատ կը նպաստէ նորա բնագրի համեմատական[1] ուսումնասիրութիւնը հնագոյն հայ պատմագիրների գրուածների հետ, — բացատրելով նորա որչափով ինքնուրոյն կամ մուրացածոյ, որպէս եւ որ դարու հեղինակ լինելը, — ես ձեռք զարկի այդ տեսակէտից հետազօտել «Զենոբայ Ասորւոյ Տարօնոյ Պատմութիւն»։ Իմ աշխատութեանս արգասիքը — նախ նիւթերը եւ ապա այդ նիւթերի ուսումնասիրութեան վերայ հիմնած քննադատութիւնը եւ հետեւցրած եզրակացութիւնները — առաջարկում եմ ահաւասիկ մեր բանասէրներին՝ այժմէն իսկ չծածկելով որ ես եւս հակամէտ եմ այն հայեացքին, ըստ որում Զենոբի գրուածը արդարեւ Է դարու մի հայի կարկատանք համարելու է[2]։

---

[1] Զենոբի բնագրի մի քանի նմանութիւնները միւս մատենագիրների գրուածների հետ նկատել են «Տարօնոյ պատմութեան» Ա. եւ Բ. ֆրանսերէն թարգմանիչները — E. v. Prud'homme (Journ. Asiat. 1863) եւ V. Langlois (Collection, I, 1867), — կասկած անգամ չտանելով իրենց թարգմանած հեղինակի մուրացածոյ լինելու մասին։ — Մի թեթեւ համեմատութիւն Զենոբի եւ Խորենացու գրուածների (Ն. Մ.) լոյս տեսաւ «Հանդէս Ամսօրեայ», 1890, թ. 1, էջ 4։

[2] Հ. Յովսէփ Գաթրճեան, (Սրբազան Խորհրդատետր.

Զենոբի բնագիրը ըստ Վենետկեան տպագրութեան[1] բաղկացած է 42 երեսից, որից 13ը նուիրած է Լուսաւորչի եւ կեսարիոյ Ղեւոնդիոս Արքեպիսկոպոսի թղթակցութեան եւս եւ բուն աշխատութեան Առաջաբանին, որ բացատրած է "Տարօնոյ պատմութեան„ կամ՝ որ նոյնն է, "Ասորոց թղթի„ գրելու "պատճառը։„ Այդ թղթերը եւ Առաջաբանը (13 երես) թողնում եմ աշխատութեանս Բ. Մասում հետազօտելու։ Մնացեալ 29 երեսը պարունակում է "Պատմութիւն վասն Իննակնեան տեղեացն եւ պատերազմին որ յԱրձանայ,„ — որ՝ իբրեւ Կ-ԲԷ, տեղաւորում անմիջապէս Ա. Մասում։ Այստեղ՝ երկուզուգընթաց սիւնակներում՝ համեմատած է Զենոբի բնագիրը միւս հայ մատենագիրների գրուածների կամ՝ ինչպէս ես ենթադրում եմ, նորա իսկական աղբիւրների հետ՝ 28 յօդուածի (§) վերածելով համեմատութեան բոլորնիւթը։ Նշ-ՔԷՐ բառերը աղբիւրների շարքում՝ պահպանուել են ուղղակի՝ առանց փոփոխութեան Զենոբի գրուածում, որ ակներեւ ապացոյց է փոխառութեան. աղբիւրների լայն շարուած բառերից Զենոբ (կամ ով որ է հեղինակը) ծաղկաքաղ է անում՝ փոխանակելով նոցա համանիշ այլ խօս-

փայլք Հայոց. Մասն Բ) յիշելով Մ. Եփրեմեայ աշակերտ Զենոբին գրում է. "Ով ան Զենոբ՝ որ իր համանուն գրովը հայ կարկառանաց մին է 7դ դարուն, նոյն դարուն Սեբէոսի գլուխը գտնուած Ագաթանգեղոսի գրուածին պէս։„ Համեմատ այս մասին նաեւ "Հանդէս Ամս.„ 1889, թ. 3, էջ 50—51 եւ "Հանդէս Ամսօրեայ„ 1891, թ. 8, էջ 44. (Մատենախօսութիւն Հ. Ց. Տ.)։

[1] Պատմութիւն Տարօնոյ զոր թարգմանեաց Զենոբ Ասորի. Վենետիկ, Ս. Ղազար, 1832, 8°։

քերով եւ համարեա միշտ նոցա ընդհանուր իմաստը պահպանելով — ընդ սմին ոչ առանց կրճատելու կամ երկարացնելու իւր գրութիւնը — ըստ երեւութին փոխառութիւնը կամ մուրացութիւնը ծածկելու նպատակով: — Աղբիւրները ես որոշում եմ յայտնի եւ անյայտ ածականներով. յայտնի աղբիւրները յանուանէ, տեղովն նշանակուած են դէմ առ դէմ Զենոբի բնագրին. անյայտ աղբիւր եմ անուանում Զենոբի այն հատուածները, որք ոչ միայն չեն արդարանում միւս մատենագիրների աւելի ճիշդ վկայութիւններով, այլ եւ մեծաւ մասամբ անհաւաստի, առասպելախառն են, նաեւ նպատակաւոր կամ կողմնակալ (tendenziös) եւ ի հարկէ ոչ Դ. եւ ոչ Ե. դարու հեղինակի մտքի ու գրչի արտադրութիւն: — Իսկ ոմանց անյայտ աղբիւրների ձայնակցութիւնը Ասողիկի կամ մանաւանդ Ուխտանէսի[1] եւ Վարդանի գրուածներին՝ յետ ժամանակի փոխառութեան նշան համարելու է Է. դարում խմբագրած Զենոբին վերագրեալ Պատմութիւնից եւ ոչ թէ այդ Պատմութեան Ա. կամ Բ.՝ հնագոյն կամ նորագոյն՝ թարգմանութեան հետքեր, ինչպէս ենթադրեցին ոմանք:[2]

7/19 Փետր. 1893, Թ. Գր. ԽԱԼԱԹԵԱՆ
Մոսկուա:

---

[1] Հմր օրինակ համեմ. Զենոբի § 9 եւ Ուխտանէսի Ա. 57 գլ. (տպ. Վաղարշապատ). ու Վարդանի էջ 54 (հրատ. Էմինի). Զ. § 12 եւ Ասողիկի էջ 61 (տպ. Ս. Պետերբուրգ):

[2] Sukias de Somal, Quadro della Storia lett. di Armenia, p. 12.

# ՄԱՍՆ Ա.

## ՆԵՐՔԹԵՐ

---

### ՁԵՆՈՐ

§ 1. *Եղ* 20, 1—8 *տող: Ընդ ժամանակս թագաւորութեանն Խոսրովայ որդւոյ Վաղարշայ, վրէժխնդիր լինէր Արտաւանայ եղբօր իւրոյ, եւ ի գոալ ընդ միմեանս երկուց թագաւորացն՝ Հայոց եւ Պարսից՝ սաստկացաւ մարտ պատերազմին, եւ զօրացաւ արքայն Հայոց. եւ սկսաւ ապականել զերկիրն Պարսից ամս տասն եւ հիմն ի վեր ջանայր առնել սպանմամբ եւ գերութեամբ:*

§ 2. *Եղ* 20, 8—11. *Եւ եղեւ մինչդեռ արքայն Ճենաց եւ ոչ կարաց գրաւել զմիտս նորա ի հաշտութիւն. այլ սովոր եւ որով հանեալ զվրէժս եղբօրն իւրոյ, զոր եսպան արքայն Պարսից:*

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Ագաթ.[1] Ընդ նուաղել ժամանակի թագաւորութեանն
էջ 29, տ. 1—4 Պարթեւաց, ի բառնալ տէրութեան յԱր-
տաւանայ որդւոյ Վաղարշու ...
էջ 31, 13—24 (Խոսրով) ջանայր վրէժ խնդրել ... ի բազ-
մութիւն զօրաց ապաստան եղեալ ...
վաղվաղակի ի թիկունս հասանէին մեծաւ
բազմութեամբ ... Աղուանք, Լփինք ... զի
վրէժ արեանն Արտաւանայ խնդրեսցեն։
էջ 31, 24—26 ... եւ էր ինքն (Խոսրով) ի մեծի տրտմու-
էջ 32, 1—2 թեան վասն բնութեան եղբայրութեան
էջ 32, 24—25 ... առեալ Խոսրովու զբազմութիւն զօրաց
էջ 33, 2—21 իւրոց ... իբրեւ ետես թագաւորն Պարսից
զայն ամբոխ բազմութեան գնդի ... ոչ կա-
րաց ունել զդէմ նորա, փախստեայ լինէր
առաջի նոցա. զհետ մտեալ կոտորէին զամե-
նայն զօրսն Պարսից ... Եւ թագաւորն
Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն մեծաւ
էջ 35, 7—11 յաղթութեամբ ... Եւ ամս տասն ...
աւար առեալ, աւերէին զամենայն երկիր
սահմանացն, որ ընդ Պարսից թագաւորու-
թեամբ ... էր։

Անյայտ։

---

[1] Ագաթանգեղայ Պատմութիւն, Վենետիկ, 1862։

## ԶԵՆՈԲ

**§ 3.** էջ 20, 11—18։ Իսկ այր ոմն անուն Անակ, ի նոյն ազգէն Արշակունեաց, խորհուրդ արարեալ առ արքայն Պարսից՝ գալ սպանանել զԽոսրով, եւ իւր վարձանս առնուլ զՊալհաւն Պարտաւայ։ Զոր յանձին կալեալ արքային Պարսից, ոչինչ վերջանայր Պարթեւն ի սպանմանէն Խոսրովու. այլ յարուցեալ առնու զեղբայր իւր եւ զկին եւ զորդիս իւր, եւ սիրոյ պատճառաւ եւ փախստեան աղագաւ գայ առ Խոսրով։ Եւ ի կատարել
էջ 21, 1—9, երկրորդ ամին, մինչդեռ կամէր արշաւել Խոսրով ի Պարսիկս ի գարնանային ժամանակս, ի ժամ որսոյն մեկուսի առեալ զԽոսրով Անակայ՝ որպէս թէ բան ինչ ունի ասել, յանկարծակի զէնս ի վերայ յարուցեալ[1] զԹագաւորն գիթաւալ կացուցանէր։ Եւ ինքեանք Ջրասոյզ եղեալ կործանեցան իւրայօքն ամենեքումբ, ոչ ժամանեալ ի Պարթեւն։ Բայց Թագաւորն Պարսից զօր մահուն Խոսրովայ տօն կարգեաց եւ

**§ 4.** էջ 21, 10—11 զՊարտաւն մնացեալ ազգին տայր Անակայ։

**§ 5.** էջ 21, 11—27։ Արդ մինչ ի Պարսիցն դիմեալ գայր Անակ յԱրտազ գաւառ ի Հանգիստ սուրբ առաքելոյն Թադէոսի առեն զՍրբոյն

[1] Ի յլ օրինակ՝ «ի վեր յարուցեալ». Ծ. Հէղ.

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

**Ագաթ.** Արդ սա ի մէջ խորհրդեանն գլխաւոր
էջ 36, 12—24 նահապետ Պարթեւաց տէրութեանն,
որոյ անուն էր Անակ... խոստանայր վրէժ խըն-
դրել. խօսել սկսաւ ընդ նմա թագաւորն
(Պարսից) եւ ասէ. եթէ միայն զայդ նա-
խանձ խնդրեսցես միամտութեամբ, զբնա-
կութիւնն Պարթեւական զձեր սեփական
էջ 37, 8—19 Պալհաւն ի ձեզ դարձուցից ... Յայնմ
ժամանակի հանդերձեցաւ կազմեցաւ
Պալհաւն եղբարբն իւրով՝ հանդերձ ընտա-
նեօք խառնամբիխն օրդուովք ... ելեալ երթայր
հասուած ի պատճառանաւ ի կողմանս Հայոց...
եկեալ յանդիման եղեւ ... Խոսրովու ...
էջ 38, 18—26 Իսկ իբրեւ եկին հասին աւուրք ձմերան հա-
էջ 39, 1—2 րաւակողմն փոխան դրանցն բանակին ... ի
միտ առ թագաւորն. գումարտակ առնէր ան-
դրէն արշաւել ի կողմանս Պարսից ... տանայր
(Պարթեւն) զթագաւորն մեկնեալ ... իբրու
ի պատճառս ինչ զրօսանաց, իբրու
խորհուրդ ինչ խորհելոյ ընդ նմա ...
յանկարծ .. զէնս մերկացուցեալ զթագաւորն
էջ 41, 14—17 սպանանել կոտորեցեալ ... Իբրեւ լուաւ զայս
թագաւորն Պարսից, զուարճանայր ... տօն մեծ
ուրախութեան առնէր զօրն զայն։

**Սեբէոս։**[1] Եւ կատարեաց արքայն (Պարսից) ի վերայ
էջ 36, 19—20 նորա զպարգեւսն խոստացեալս հօրն նորա
Անակայ զբուն իսկ զՊարթեւականն
զՊալհաւն ...։

**Մ. Խորենացի։**[2] Արդ ի բնակելն Անակայ ի դաշտին

---

[1] Պատմութիւն Սեբէոսի Եպիսկոպոսի ի Հերակլն, Ս. Պետերբուրգ. 1879. 8°։

[2] Մ. Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ 1865, 8°։

## ԶԵՆՈԲ

**§ 3.** էջ 20, 11—18։ Իսկ այր ոմն անուն Անակ, ի նոյն ազգէն Արշակունեաց, խորհուրդ արարեալ առ արքայն Պարսից՝ գալ սպանանել զԽոսրով, եւ իւր վարձանս առնուլ զՊալհաւն Պարտաւայ։ Զոր յանձին կալեալ արքային Պարսից, ոչինչ վերջանայր Պարթեւն ի սպանմանէն Խոսրովու. այլ յարուցեալ առնու զեղբայր իւր եւ զկին եւ զորդիս իւր, եւ սիրոյ պատճառաւ եւ փախստեան աղագաւ գայ առ Խոսրով։ Եւ ի կատարել
էջ 21, 1—9. երկրորդ ամին, մինչդեռ կամէր արշաւել Խոսրով ի Պարսիկս ի գարնանային ժամանակս, ի ժամ որսոյն մեկուսի առեալ զԽոսրով Անակայ՝ որպէս թէ բան ինչ ունի ասել, յանկարծակի զէնս ի վերայ յարուցեալ[1] զԹագաւորն դիաթաւալ կացուցանէր։ Եւ ինքեանք ջրասոյզ եղեալ կործանեցան իւրայօքն ամենեքումբք, ոչ ժամանեալ ի Պարթեւն։ Բայց Թագաւորն Պարսից զօր մահուն Խոսրովայ տուն կարգեաց եւ

**§ 4.** էջ 21, 10—11 զՊարտաւն միայեալ ազգին տայր Անակայ։

**§ 5.** էջ 21, 11—27։ Արդ մինչ ի Պարսիցն դիմեալ գայր Անակ յԱրտազ գաւառ ի Հանդիատ սուրբ առաքելոյն Թադէոսի ասեն զՍրբոյն

---

[1] Բ. յլ. օրինակ՝ «ի վեր յարուցեալ». Ծ. Հեղ.

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Ագաթ. Արդ ահա ի մէջս խորհրդեանն գլխաւոր
Էջ 36, 12—24 նահապետ Պարթեւաց տէրութեանն,
որոյ անուն էր Անակ... խոստանայր վրէժ խնդրել. խօսել սկսաւ ընդ նմա թագաւորն (Պարսից) եւ ասէ. եթէ միայն զայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ, զբնակութիւնն Պարթեւական զձեր սեփական
Էջ 37, 8—19 Պահլաւն ի ձեզ դարձուցից ... Յայնմ ժամանակի հանդերձեցաւ կազմեցաւ Պարթեւն եղբարբն իւրով՝ հանդերձ ընտանեօք խառնաղանջ տանն ... ելեալ երթայր հասուած ի պատճառանս ի կողմանս Հայոց... եկեալ յանդիման եղեւ ... Խոսրովու ...
Էջ 38, 18—26 Իսկ իբրեւ եկին հասին աւուրք ձմերոտ հա-
Էջ 39, 1—2 րաւակողմն քաղաքն գրանցն բանալոյ ... ի միտ առ Խոսրովն. զումարտակ առնէր անդրէն արշաւել ի կողմանս Պարսից ... տանայր (Պարթեւն) զԽոսրովն մէկուսի ... իբրու ի պատճառս ինչ զրուցանաց, իբրու խորհուրդ ինչ խորհելոյ ընդ նմա ... յանկարծ .. զէնս մերկացուցեալ զԽոսրովն
Էջ 41, 14—17 սպանանել կոտորեալ ... Իբրեւ լուաւ զայս Խոսրովն Պարսից, զուարճանայր ... տօն մեծ ուրախութեան առնէր զօրն զայն։

Սեբէոս:[1] Եւ կատարեաց արքայն (Պարսից) ի վերայ
Էջ 36, 19—20 նորա զպարգեւսն խոստացեալս հօրն նորա Անակայ զոր ... իսկ զՊարթեւականն զՊահլաւն ....։

Մ. Խորենացի.[2] Արդ ի բնակելն Անակայ ի դաշտին

---

[1] Պատմութիւն Սեբէոսի Եպիսկոպոսի ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, 8°։

[2] Մ. Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ 1865, 8°։

ԶԵՆՈԲ

*Գրիգորի յղութիւնն անդ լեալ. որ եւ զնորին մշակութեանն ելից զկարգն։ Արդ մինչ ի խաղաղութեան էր Խոսրով, այր մի որ կոչէր Բուրդար՝ ի նշանաւոր ազգէն Պարսից՝ ելեալ զկնի Անակայ, եւ եկեալ մինչեւ յԱրտազ, եւ անտի ելեալ գնաց պանդխտել ի կողմանս Գամրաց։ Եւ եկեալ ի Կեսարիա, եւ առեալ իւր կին ի հաւատացելոց զմեծատան ուրեմն քոյր՝ անուն Եւթաղէ, եւ քեռն Սոփի։ Եւ կացեալ ամ մի ի Կեսարիա, եւ դարձեալ առ զկինն իւր Բուրդարս այս, եւ գնաց ի Պարսիկս։ Զորոյ զհետ մտեալ Եւթաղեայ, հասանէ ի գաւառին այրարատեան. եւ պաղատեալ ի Վաղարշապատ քաղաքի, մտանէր Սոփի ստնտու մանկանն Գրիգորի, եւ իբրեւ զդայեակ համարձակ սնուցանէր զմեր Լուսաւորիչն։*

**§ 6.** էջ 21, 28—30։ *Արդ իբրեւ սպան Անակ զԽոսրով, եւ դեռ յոգւոջ էր, հրաման տայր թագաւորն զազգատոհմն Անակայ ի սուր սուսերի մաշել։*

**§ 7.** էջ 21, 30—33։ *Իսկ Բուրդարս իբրեւ լուաւ զայս հրաման ի թագաւորէն, փութացեալ եմուտ առ Ոգուհի կինն Անակայ, եւ առեալ զԳրիգոր ի գրկաց նորա եւ ետ զնա ցկինն իւր Սոփի։*

**§ 8.** էջ 21, 34—35։ *Իսկ զմիւս եղբայր նորա, որ կոչէր Սուրէն մանկաբարձքն փախուցին ի դուռն Պարսից,*

**§ 9.** *Եւ անդ սնաւ առ հօրաքեռն իւրում, որ էր*
էջ 21, 35—36 *կին թագաւորին Զուանշըրի Հեփթաղի։ Որ*

## Ձ Ե Ն Ո Բ

էջ 22, 1–4 Իբրեւ զարգացաւ՝ գնաց յերկիրն Ճենաց յետ
մահուն Խոսրովուհեայ. եւ կացեալ անդ
ամս տասն, թագաւորեաց անդ ի վերայ
երկրին Ճենաց ամս իննեւտասն:

էջ 22, 4–7 Զոր ոմանք (°) համբաւեն՝ թէ Սգօն ասեն
եղբօրն Գրիգորի, որ է Յակոբ. բայց ոչ գիտեն
զստոյգն, զի Յակոբն այն հօրաքեռորդի էր
Ս. Գրիգորի.

էջ 22, 7–17 Եւ անուն մօրն նորա Խոսրովուհի: Իսկ յոր-
ժամ մեռաւ մայր նորա, եւ զթագաւորու-
թիւնն բարձին ի հօրէ նորա Տիրանայ, զի
եսպան զնա ի պատերազմի արքայն Լփնաց
Ոսգէս, ապա Յակոբ հանդերձ քերբն իւրով
Աշկդնէիւ մնաց անդ: Եւ յետ ժամանակաց
քեռորդի նորա գնաց յաշխարհն Գթաց, եւ
անդ թագաւորեաց. զոր յետոյ Տրդատ
ըմբռնեաց, մինչ առ արքայն Յունաց էր: Զի
սա էր, որ եկն ի պատերազմ ի վերայ Դիոկ-
ղետիանոսի արքային Յունաց, որպէս Ագա-
թանգեղոս պատմէ զայսոսիկ:

էջ 22, 17–21 Եթէ ստուգիւ կամիս գիտել զայսոսիկ, ով
երանելիդ Բեկտոր, ընթերցիր զթագաւորու-
թիւն Հեփթաղենիկայ հելլենացի գրով եւ
կամ զթագաւորութենէն Ճենաց, զոր գտա-
նես յՈւռհա քաղաքի առ Բարդայ պատ-
մագրի:

§ 10. էջ 22, 22–36: Իսկ Բուրդար առեալ զկին
իւր եւ զմանուկն Գրիգոր, գնաց զկնի անե-
րոյն իւրոյ Եւթաղեայ յաշխարհն Կապա-
դովկացոց. եւ տուեալ զնա ի դպրոց, ու-
սուցանէր ասորի եւ հելլենացի դպրութիւն
եւ լեզու, եւ վարժեալ լինէր աստուածպաշ-
տութեամբ: Իբրեւ եղեւ երկոտասանամեայ,
այր ոմն աստուածապաշտ, որ կոչէր Դաւիթ՝

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Վարք Ս. Յակոբայ։[1] Եւ ոմանք (՞) հակառակին
էջ 5, յառաջին բանս ոչ առեալ զնա (զՅակոբ)
տ. 12—15 յազգէն Արշակունեաց կամ հօրաքեռորդի Ս.
Գրիգորի . . .

Անյայտ։

Վարք Ս. Յակոբայ . . . զոր (զլինելն Յակոբայ
անդ, հօրաքեռորդի Ս. Գրիգորի) մեք սերտ գտեալ
էջ 5, եւ հաւանեալ ի գրոց Ասորւոց . . .
տ. 16—17

Մ. Խորենացի . . . եւ ի հասանել աղէտին (սատա-
Բ, 80 կման ազգատոհմին Անակայ)՝ առեալ Եւ-
էջ 160, թաղեայ զքոյր իւր եւ զայրն նորա (զԲուր-
24—27 դար) հանդերձ մանկամբն ի Կապադովկիացւոց
էջ 161, աշխարհն դառնայր . . . Բայց յարքունս
3—14

[1] Տես “Սոփերք Հայկականք„, ԺԲ։ Բայց Յակոբայ վարքի Ը դարից շատ առաջ գրուած լինելը ես կարծեմ վիճելի կարող է լինել։

ամուսնացուցանէր զնա ընդ դստերն իւրում, որ կոչէր Մարիամ։ Արդ իբրեւ եղեն նմա երկու որդիք, անուն անդրանկին Վրթանէս եւ կրտսերոյն Յուսիկէս, մայրն եմուտ ի վանս կանանց եւ կրտսերն գնաց զհետ ճգնաւորի մի՝ որում անունն էր Նիկիմաքոս. իսկ անդրանիկն մնաց առ դայեակն իւր, եւ յետոյ ամուսնացաւ։ Եւ հայրն անցեալ գնաց առ Տրդատ՝ զհօրն պարտսն հատուցանել.

§ 11. Եւ մնաց առ նմա մինչեւ նա թագաւորեաց
էջ 22, 36—37 ի տեղի հօրն իւրոյ. եւ վասն ոչ զոհելոյ
էջ 23, 1—11 կռոցն՝ ի մեծամեծ տանջանս մատնեաց զնա։
Իբրեւ տեղեկացաւ ի քեռայ աներոյն[1] Գրիգորի եթէ դա է որդին Անակայ՝ որ սպան զհայրն քո զԽոսրով, եւ նորա արկեալ զնա ի վիրապն ներքին ամս հնգետասան։ Եւ յետ հնգետասան ամին դիւահարեալ ամենայն երկիրն Հայոց, եւ ինքն թագաւորն ի մէջ վարազացն երթեալ գազարէր։ Իսկ ի հրամանէն Աստուծոյ եկեալ հանին զնա նախարարքն իւր. եւ նորա ելեալ ժողովեաց զնոսա առ ինքն, եւ հինգ օր թողու զնոսա անսուաղ առաջի իւր կալով, լսելով զքարոզութիւն վարդապետութեան նորա։

---

[1] Համմտ. նաեւ Խորենացւոյ Բ, 82 ... «Սա էր (Տամառ Աշոցայ՝ քեռայր Արտաւազդայ Մանդակունւոյ) որ յապաւեան զգացոյց Տրդատայ իւրոյ Արտաւազդայ եւ նա արքային, նախ զԳրիգոր Անակայ լինել որդի.» — Զենոբ բառերեւութիւն չփոթել է Խորենացու հաղորդածը։

Ն. Հէն։

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Հասակի հասեալ մանկանն, փեսայացուցանէ հաւատացեալ ոմն այր, որում անուն էր Դաւիթ, ի դստեր իւր Մարիամ, որ յետ երից ամաց երկուց որդւոց լինելոյ, ի կամաց երկոցունց մեկնեալ ի միմեանց զատուցին: Մարիամ հանդերձ մանկամբն կրօնաւորեալ ի վանս կանանց անկեալ կրօնաւորիւք. որոյ յարքունս հասեալ մանկանն, զհետ ընթանայ միայնաւորի մի, որում անուն էր Նիկոմաքոս, եւ նա առաքէ յանապատ: Իսկ անդրանիկն առ դայեկաց մնացեալ, որ ապա աշխարհավարեալ ամուսնացաւ: Բայց հայրն նոցին Գրիգոր անցեալ գնաց առ Տրդատ՝ չհայրենեացն հատուցանել պարտս:

Ագաթանգեղ. . . . դարձեալ լինէր ի կողմանցն Յու-
էջ 49, 1—2 նաց Տրդատ արքայ Հայոց Մեծաց:
էջ 43, 16—24 Իսկ իբրեւ զգացեալ Տրդատիոս վասն Գրիգորի՝ թէ քրիստոնէական պաշտամանն հաղորդ է... բազում անգամ ի բանդս եւ ի կապանս տանջանօք նեղէր զնա . . .
էջ 102, 1—10 . . . ոմն մատուցեալ ի նախարացն սկսաւ խօսել եւ տալ տեղեկութիւն եւ ասել այսպէս վասն նորա (Գրիգորի) . . . դա է որդի Անակայ մահապարտի՝ որ սպան զհայր քո Խոս-
էջ 103, 2—11 րով . . . Հրաման տայր (արքայն) . . . իջուցանել (զԳրիգոր) ի վիրապն ներքին . . . եւ եղեւ նա յայնմ վիրապի ամս երեքտասան . . .
էջ 164, 17—25 եւ անդէն մոլեգնել սկսաւ (թագաւորն)
. . . եղեալ ըստ մարդկային բնութեան արտաքս
էջ 165, 9—11 ի նմանութիւն վայրենի խոզաց, իբրեւ զնոսա, ընդ նոսա ի մէջ նոցա երթեալ բնակէր . . . Նաեւ ամենայն մարդիկն որ ի քաղաքին էին՝ նոյն օրինակ դիւաբախք մոլեգնէին . . .
էջ 167, 5—9 Իսկ նորա (զկնի հրաշալի տեսլեանն Խոսրո-

§ 12. էջ 23, 11—15: Այս առաջին պահք եղաւ յաւուրս սրբոյն Գրիգորի. զոր ի Հռոմ Սեղբեստրոս հաւանեցաւ, եւ պահեաց ինքն եւ Կոստանդիանոս թագաւորն, եւ ամենայն քաղաքն Եգիպտոսի. զոր եւ Առաջաւորք կոչեմք:

§ 13. էջ 23, 16—33: Եւ յորժամ լցան աւուրք՝ պահոց նոցա, թափեցան մորթ վայրենական խոզակերպին Տրդատայ, եւ դիւաբնակ մարմինք զօրաց նորա ընկալան զբժշկութիւն: Ապա ձեռն ի գործ արկեալ՝ ուսուցանէր նոցա շինել տունս տէրունականս, եւ ասէ. Պարտ է քահանայս ածել, որ հովուեն զձեզ: Իսկ հրեշտակ տեառն հաւանեցոյց զնոսա, զինքն լինել նոցա հովիւ: Զոր յանձն առեալ, տայ ի ձեռս նորա իշխանս եւ զօրս բազումս եւ առաքէ զնոսա յաշխարհն Կապադովկացւոց ի քաղաքն Կեսարիա, ձեռնա-

---

¹ Երկու ձեռագիր Ս. Էջմիածնայ Մատենադարանի (Մէկը ԺԳ. եւ միւսը ԺԵ դարու) ունին այստեղ. — ... "աւուրք պահոց նոցա վ ա թ ս ո ւ ն ե ւ հ ի ն գ, թափեցան ...„:
Ծ. Հեղ.:

ԱՂԲԻՒՐՆԵՐ

վիրխայ) յղէին անդր նախարար զոմն Աւտայ․
․․․ ի քաղաքն Արտաշատ՝ հանել զնա ի խոր
բանդէ վիրապին ․․․

էջ 171, 11—17 Եւ ի վաղիւ անդր թագաւորն եւ նախարարքն
էջ 183, 4—6 ․․․ խառնաղանջ ամբոխիւն բազմութեամբ
էջ 181, 17—18 եկեալ ի ծունր իջեալ առաջի սրբոյն Գրի-
գորի ․․․ խնդրէին եւ ասէին ․․․ տայցե՞ս
մեզ զուղիղ լուսաւորութիւն։ ․․․ Եթէ ոչ
կամիցէք (ասէ Գրիգոր) լնել լուսաւորութեան
Բանին կենաց ․․․․

Անյայտ։

Ագաթ․ Արդ ի լնուլ վաթսներորդ վեցերորդ ա-
էջ 548, 8—25 ւուրն ․․․ աղաչէին առաջի սրբոյն Գրիգորի․
խնդրէին զբժշկութիւն գտանել զհարուա-
ծոցն պատուհասին ․․․ մանաւանդ թագաւ-
որն, զի էր նա փոխեալ ի կերպարանս աղը-
էջ 551, 7—15 եւայից խոզաց ․․․ իսկ նա (Գրիգոր) յետ
աղաչանացն տուեալ պատասխանի ասէ ցնո-
սա ․․․ դուք սրտի միով խնդրեցէք զձեր
բժշկութիւնն. Մարդասէր աստուածութիւնն
ողորմեսցի ձեզ։ Բայց փութացարուք շինեցէ-
էջ 596, 1—11 զվկայարանսն ․․․ իսկ անդէն տեսիլ
զքանչելի յԱստուծոյ երեւեալ թագաւորին,
տեսանէր զհրեշտակ Աստուծոյ՝ զի խօսէր
ընդ նմա թէ պարտ է ձեզ զԳրիգոր վի-
ճակեցուցանել ի քահանայութիւն։
․․․ Նոյնպէս եւ երեւեալ Գրիգորի հրեշտա-

դրիլ ի սրբոյ Հայրապետէն Ղեւոնդեայ ։ Եւ եկեալք ի Վաղարշապատ քաղաքէ, անցանէին ընդ գաւառն Բասենոյ, եւ գային յԵրէզնաւան յեկեղեաց գաւառին, ի կուսան՝ զոր ինքն կործանեաց ։ Եւ անտի երթեալք, մտին ի Կեսարիա ։ Եւ ձեռնադրի ի մեծ Հայրապետէն Ղեւոնդեայ մեծաշուք պատուով. արքաբեալ նմա մեծարանս, տայ նմա զսուրբ Նշխարս Կարապետին Յովհաննու եւ զԱթանագինեայ վկայի ։

§ 14. Բայց եթէ ով երեր ի Կեսարիա զնշխար կա-
էջ 23, 34—37 րապետին. Յովհաննէս աւետարանիչն ։ Մինչ
էջ 24, 1—31 էր նա ի Պատմոս կղզւոջն, եւ եկն յԵփեսոս,
եւ անտի երթեալ յԵրուսաղէմ՝ գտանէ զգերեզման նորա ըստ հրամանի տեսչութեան Աստուծոյ. եւ առեալ ի գիշերի զսուրբ մարմինն Կարապետին Յովհաննու, եւ ետ ցՊողիկարպոս եպիսկոպոսն՝ որ էր աշակերտ իւր, եւ ետ տանել յԵփեսոս յեկեղեցին՝ զոր ինքն շինեաց, եւ կոչեաց զանուն նորա սուրբ Ա-

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

կի Աստուծոյ, զի մի իշխեսցէ ինչ պնդել յամառել վասն այնր . . .

էջ 597, 22—27 Այս են իշխանք . . . հազարաւորք, բիւ-
էջ 598, 1—8 րաւորք . . . զոր գումարեաց Թագաւորն, եւ առաքեաց զնոսա ի կողմանս Կապադովկացւոց ի տեղւոջն Կեսարացւոց . . . զի տարեալ զԳրիգորն՝ քահանայապետ կացուսցեն իւրեանց աշխարհին . . . Եւ հրամայեաց հրովարտակ գրել (առ Ղեւոնդիոս արքեպիսկոպոսն Կեսարու) օրինակ զայս
էջ 602 13—16, . . . եւ խաղացին յԱյրարատ գաւառէ ի
էջ 603, 2—3 Վաղարշապատ տեղւոջէ եւ հասեալ ի սահմանս Յունաց . . . գային հասանէին ի քաղաքն Կեսարացւոց . . . .

էջ 604, 5—8 Եւ եղեւ ժողով բազում եպիսկոպոսաց ի քաղաքն Կեսարացւոց՝ զի ձեռնադրեսցեն զՍ. Գրիգորիոս . . .

էջ 604, 20—24 Մեծաւ պատուով . . . զՍ. Գրիգորիոս ան-
էջ 607, 14—20 դուստ յղարկեցին իշխանօք հանդերձ . . . Իբրեւ դարձեալ գայր ի կողմանց Յունաց, բարձեալ բերէր (Գրիգոր) ընդ իւր նշխարս ինչ յոսկերացն մեծի մարգարէին երանեալ Մկրտչին Յովհաննու եւ զսուրբ վկային Քրիստոսի զԱթանագինէան ։

Անյայտ.

տուածածին։ Եւ յետ փոխման աւետարանչին՝ միայ յԵփեսոս սուրբ նշխարքն Կարապետին, մինչեւ ի ժամանակս Դեկոսի թագաւորի։ Եւ ապա ի ժամանակս նորա նատի յԵփեսոս աշակերտ Ակգենոսի Փարմելոս. եւ անտի հալածեալ եկն ի Կեսարիա, ընդ իւր ունելով զբուլորովին նշխարս սուրբ Կարապետին, բայց միայն ի գլխոյն։ Եւ եդ զնա ի սուրբ սրբեգանն, ոչ ի ծածուկ՝ այլ յայտնի. եւ եկաց ի նոյն տեղւոջն մինչեւ ցթագաւորութիւն Դիոկղետիանոսի։ Եւ ի գալ սրբոյն Գրիգորի ի ձեռնադրութիւն առ Ղեւոնդ Կեսարու հայրապետն, որ թէպէտ բազում անգամ խնդրեաց սուրբն Գրիգոր զնշխարս Ս. Կարապետին, ոչ էառ յանձն տալ. մինչեւ հրաման ի Տեառնէ առնոյր ի գիշերի վերջնումն՝ բաժանել եւ տալ զկէսն ցնա։ Եւ ի վաղիւն բազում պատերազմունս սկսաւ լինել, մինչեւ նախարարքն կշռեցին քահանայապետին երկոտասան հազար դահեկան, եւ այնպէս առեալ բռնութեամբ՝ ելին ի քաղաքէն մինչ զի խորհուրդ առեալ իշխանն Անգեղ տան հարկանել զքաղաքն ի գիշերի հրով։ Զոր իմացեալ հայրապետին, համոզեաց զնոսա ի խաղաղութիւն. եւ փոխանակ երկոտասան հազար դահեկանին՝ ետ նոցա զնշխարս Աթանագինեայ, եւ հաղեկարաց արձակել զնոսա հաշտութեամբ եւ սիրով։ Տայր եւ սրբոյն Գրիգորի երկու բուսաւոր ակունս, զոր էր առեալ նմա Հռոմայ հայրապետն։

§ 15. Էջ 24, 32—34։ Ելեալ ի Կեսարիոյ՝ միայր ժամանակս ինչ ի Սեբաստիա, հաւաքել

զգաստս կրօնաւորաց։ Եւ զոմանս վարդապետս կոչէր

§ 16. յԱղեքսանդրիոյ, եւ Հրաշագան պաշտօնեայս.
էջ 24, 34—39 յորոց մին Դիկլաւիոս, զոր Դունայ դաշտին
էջ 25, 1—4 եպիսկոպոս ձեռնադրեաց. նոյնպէս եւ զայլս յԱսորոց։ Որ եւ զիս իսկ ոչ եթող դառնալ ի Նիւսարա՝ հրաժարեալ յեղբօրէն իմմէ Նեղիազարու։ Եւ անտի ելեալ անցաք մինչեւ ի Թորդան. եւ անդ թողաք զՍուրբատինոս։ Եւ մեք ելեալ անտի ընդ Կարին եւ ընդ Հարք կամեցաք անցանել։

§ 17. էջ 25, 4—6։ Իսկ ոմանք յիշխանացն զգայուցին Ս. Գրիգորի, եթէ ի գաւառն Տարօնոյ երկուս բագինս մնացեալ են, որ դեւաձօնեն դիւաց։ Իսկ նորա դէմ եղեալ գայր...

§ 18. Իսկ Ս. Գրիգորի առեալ զիշխանն Արծրու-
էջ 25, 6—29, նեաց ... իսկ իշխանն Անգեղտան ձայն
էջ 26, տուեալ (էջ 26) ասէր ... իսկ նորա եր-
27, 28, 29, 30, թեալ եւ ոչ կարաց ... իսկ իշխանն Ան-
31, ամբողջ գեղտանն ... իսկ իշխանն Անգեղտան ...
էջ 32, 1—9 իսկ իշխանն Մոկաց ... Իսկ արք տեղւոյն ... Իսկ արք գեղջն ... Իսկ արք գեղջն ... Իսկ մեր ի վարանս մտեալ ... Իսկ նորա չորեքհազար ... իսկ իշխանքն իբրեւ լուան ... վաղվաղակի ի վերայ (էջ 27) յարձակեալ ... իսկ այլ զօրքն Հայոց ... Իսկ Արձանն ... իսկ իշխանն Արծրունեաց ... Իսկ Դեմետր ... իսկ իշխանն ... եւ կու-

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

էջ 605, 1—6, Սեբաստացւոց եւ անդ յեցեալ յերեկօթ աւուրս ոչ սակաւս: Եւ գտանէր բազմութիւն եղբարց զորս հաւանեցուցանէր ընդ իւր գալ, զի վիճակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին:

Անյայտ.

Ագաթ. Եւ իբրեւ եհաս ի սահմանս Հայոց, լուաւ
էջ 606, 9—26, Գրիգորիոս՝ թէ Վահէվահեան մեհեանն մնացեալ՝[1] է յերկրին Տարօնոյ ... եւ բազում նուէրք մեծամեծ թագաւորաց յօնեալ անդ ... զի յայնժամ եւս դեռ չէն կային երեք բագինք ի նմա:

Անյայտ.

---

[1] Ագաթանգեղ ասում է "մնացեալ էր", "դեռ չէն կային ...", որովհետեւ Ս. Գրիգոր՝ կեսարիա գնալուց առաջ արդէն քանդել էր հեթանոսական մեհեանները՝ ինչպէս Անահիտինը Արտաշատում. Տիւր գիր բագինը Երազամոյն տեղում, — ըստ երեւութին քրմերի ոչ առանց ջերմ ընդդիմադրութեան: (Տես Ագաթ. էջ 583—587):

Ռ. ՀԻՂ.

տեցին արձան ի վերայ նորա (էջ 28) եւ կայ
. . . իսկ արք գեղջն . . . իսկ իշխանն Անգեղ-
տան . . . իսկ Գնէմար . . . Արդ իբրեւ հա-
րստացան երկոքին (էջ 29) կողմանքն . . .
իսկ ի նոյն ցեղէն . . . իսկ նորա ձայն տուեալ
. . . իսկ նա ասէ . . . իսկ իշխանն Սիւնեաց
. . . իսկ իշխանն Արծրունեաց . . . տարա-
փախտական մինչեւ ի գլուխ (էջ 30) լերինն
իսկ իշխանն Արշուց . . . իսկ նորա առեալ
. . . եւ գրեցին ի նմա այսպէս (էջ 31)․ Ա-
ռաջին պատերազմ . . . իսկ մեք . . . աջ
որոյ Կարապետին (էջ 32) եղեցի կնիք . . .
Եւ իբրեւ եկաք ի տեղին, տեսաք զտեղի
կռոցն քանդ(ակ)եալ, եւ զկուռսն, որ հնգե-
տասան կանգուն էր՝ ընդ չորս բաժանեալ։

§ 19. էջ 32, 9—26։ Եւ պաշտօնեայք կռոցն զա-
ղաղակ բարձեալ՝ ողբային չարաչար, որ եւ
գեւղքն ի լսելիս մարդկան կոծէին՝ ասելով․
Վա՜յ մեզ, զի եւ ոսկերք մարդկան մեռելոց
հալածեն զմեզ յերկրէս։ Եւ մարդկօրէն
տեսլեամբ որպէս թեւաւորք եղեալ գնացին
յԱշտիշատ կուռն։ Իսկ այլք ի դիւացն ի-
բրեւ զպիծակս անհուն բազմութեամբ, կամ
թէ որպէս թանձրամած տարտարոսի՝ այն-
պէս յարձակեալք ի վերայ բազմութեանն
եւ զքուրմսն առհասարակ լլկեալ՝ թողին ի-
բրեւ զմեռեալս։ Եւ մատուցեալ Ս. Գրիգորի,
բժշկեաց զնոսա. եւ հրամայեաց կործանել
զԳիսանէս, քանզի պղնձի էր՝ երկոտասան
կանգուն երկայնութիւն։ Իբրեւ մատեան կոր-
ծանիչքն ի ներքոյ նորա, զոր տեսեալ պաշ-
տօնէիցն՝ բազում ողբովք ի վերայ յարձա-
կեալք, ասէին. Մեռցուք նախ մեք եւ ապա
Մեծն Գիսանէս կործանեսցի։ Իսկ զօրացն ի

# ԱՂԲԻՒՐՆԵՐ

Ագաթ. Եւ ամենայն դեւքն ի փախուստ դարձեալ
էջ 585, 18—26 առաջի մարդկանն երեւեցան ... զճիչ բար-
էջ 586, 1—2 ձեալ մեծաձայն գոչելով ասէին՝ թէ Վա՜յ մեզ,
զի յամենայն երկրէ փախստական արար
զմեզ Յիսուս ... եւ աստի եւս ի ձեռն մե-
ռելոց ... եհաս մեզ փախստական լինել:

Անդ. ... ի կերպարանս մարդկան ... մեծաւ
էջ 584, 22—26 գոչելով դառնաղաղակ հարեալք՝ փախստեայք
էջ 585, 1—13 յԱնահտական ի մեհեանն անկանէին:
Ուստի ընդ հասեալսն մարտ եղեալ
կռուէին նետս անոյժս եւ քարավէժս նան-
ջրաթափ ի վերուստ ... ցնդէին ... իսկ
Ս. Գրիգոր իբրեւ տեսեալ զայն՝ նշան տէրու-
նական առնէր եւ դիմեալ է դրան մեհե-
նին,¹ եւ ամենայն շինուածք մեհենին ի
հիմանց դղրդեալ տապալեցան:

---

¹ Հինգ օր. Ս. Էջմիածնի եւ հինգ օր. Ս. Ղազարու ձեռագիրներն անփոփոխ ունին այստեղ “դդուրս մահուանդ„, որ բառ իս, ոչ այլ ինչ է, եթէ ոչ շփոթ ըն-

# ԱՂԲԻՒՐՆԵՐ

Անյայտ·

Աչօքն . . . . առեալ երանելւոյն Գրիգորի զաշխարհականն զօրացն . . . յափն Եփրատ գետոյն մատուցանէր, եւ անդէն մկրտէր առհասարակ զամենեսեան յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ։

էջ 620, 15—25

Եւ լոյս սաստիկ երեւեալ ի նմանութիւն սեան լուսաւորի՝ կայր ի վերայ ջուրց գետոյն . . . եւ ընդ երեկս աւուրն նշանն աներեւոյթ լինէր . . . Եւ որ մկրտեցանն յաւուրն յանմիկ, աւելի քան զՀնգետասան բիւր մարդիկ։

էջ 621, 7—25

. . . Եւ ելեալք ի տէրունական աւուրն զառնայրն . . . Եւ զմիշտակայս վկայիցն բերելոց

էջ 622, 13—14

ժամադրեաց տօն մեծ հաշակել . . . ի ժա-

էջ 623, 7—15

---

Թերգուած Ագաթանգեղի "ի գուան Ձեռինէն",
Մ. Հէղ.

§ 22. Եւ տուեալ զնոսա ի ձեռս քահանայիցն,
էջ 35, 17—36, ետ տանել ի գեւղս իւրեանց։ Եւ հրամայեաց
էջ 36, 37 ամ. քահանայիցն . . . Իբրեւ եղեւ այս . . . իսկ
բողջ նոքա ոչ առնուին յանձն . . . Այլ եւ յոյժ
էջ 38, 1—7 զարմանալի էր . . . զոր իբրագէկ (էջ 36) ե-
ղեալ արքային . . . իսկ նոցա լեալ . . . իսկ
Կուառ շինեաց . . . իսկ Մեղտէս շինեաց . . .
իսկ Հոռեանն . . . եւ յետ ժամանակաց . . .
Իբրեւ հիմնարկեաց Ս. Գրիգոր . . . եւ ե-
թող անդ պաշտօնեայս (էջ 37) եկեղեցւոյն
. . . իսկ Բրեխ . . . իսկ Կետեղք . . . Իսկ
Բուզու . . . Արդ յետ երկոտասան աւուր
կրթեալ իշխանէաք ի քաղաքագեօղն Մեղտի,
եւ անդ երեկօթս արարեալ (էջ 38), եւ ի
մէջ գիշերին . . . իսկ մեք . . . Եւ իշխանքն
անցեալ գնացին մինչեւ ի գաւառն Մուշ քա-
ղաքին, եւ տեղեկացեալ զի ոչ ինչ գոյր,
եւ ապա դարձան եւ եկին ընդ առաջ մեր։

§ 23. էջ 38, 7—19։ Եւ դարձուցեալ զմեզ յե-
զերայն Արածանոյ, ոմանք անցեալ մտին ի
քաղաքն յառաջագոյն, իսկ ոմանք ընդ մեզ
երթային։ Իբրեւ հեռացաք ի գետոյն իբր
ձիոյ արշաւանօք երկու կամ երեք, եւ իբրեւ
մերձեցաք առ փոքր ձորակին, եւ կամէաք
անցանել միաբան եւ գնալ ի տեղի մեհե-
նիցն, քանզի անդ իսկ էր խորհեալ գնել
զմնացեալ նշխարսն, ապա ջորիք կառացն
յայնկոյս ձորոյն ոչ կարացին անցանել եւ
նստան։ Ապա հրեշտակն յայտնեալ՝ արգել
զԳրիգորիոս, եւ ասէ. Հաճեցաւ Տէր որբոցդ
բնակել ի տեղւոջս յայս, եւ այն՝ վասն ցու-

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

*մանակի դիցն Ամանորայ . . . տօնից . . . զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին՝ յուրախութեան նաւասարդ աւուր։*

Անյայտ.

Ագաթ. . . . Իբրեւ եկին մօտ ի տեղին ի գետն Ե-
էջ 607, փրատ իբրեւ ձիոյ արշաւանօք երկուք, եւ դեռ
25—26
էջ 608, ընդ փոքր յորդան մի անցանել կամէին ընդ ջուր
1—11
մի սակաւ, զտեղի առին սպիտակ ձորէք կո-տացն, ուր կային գանձք աստուածայինն՝ նշխարք նոցա. ոչ կարացին հանել ընդ յո-րդն։ Եւ յայտնեցաւ առ Գրիգոր հրեշտակ Տեառն ասէ. Հաճեցաւ Տէր բնակել սրբոցդ Աստուծոյ ի տեղւոջդ։

ցանելոյ ի հեռագոյն տեղեաց անտի զզօրութիւնն Աստուծոյ, զոր տեսեալ մարդկան՝ հաւատացեն սքանչելեացն։

**§ 24.** Քան զայս այլ պատճառս ի Ս. Գրիգորէ ոչ
էջ 38, 19—36, լուաք։ Եւ անդ ձեռն ի գործ արկեալ շինուա-
էջ 39, ծոյ եկեղեցւոյն . . . Եւ նոյնպէս եկն ձայն
ամբողջ յերկնից. եթէ զոր ինչ խնդրեցեր՝ եղիցի. (էջ 39) եւ ոչ ոք կարէ գտանել զգոսա։ Արդ որ զկնի այսոցիկ՝ զայն թողաք այլոց պատմագրի, մինչեւ դարձեալ կրկին դառնայ պատմութիւնս ի Տարօն. զի որպէս զայլ տեղեացն չեմ ինչ գրեալ, նոյնպէս եւ զիմս չիշխէ ոք գրել. զի թագաւորաց ժամանակագիրք են։ Այս պատճէն առաջին պատերազմին Արձանին եւ որ ինչ գործեցաւ յաւուրս իմ։

**§ 25.** էջ 40, 1—6։ Ի ժամանակին յայնոսիկ լուր եհաս ի գաւառն արքայի թէ Կոստանդիանոս կայսրն հաւատաց ի Քրիստոս Աստուած, եւ դադարեցոյց զհալածումն եկեղեցեաց, քաջութեամբ կալեալ զթագաւորութիւնն։ Ապա խորհուրդ ի մէջ առեալ՝ գնալ ի գաւառն կայսեր վասն դնելոյ դաշինս խաղաղութեան ի մէջի իւրեանց,

**§ 26.** եկին հասին ի գաւառն Ապահունեաց ի
էջ 40, 7—28, քաղաքագեղն Մանծկերտ . . . իսկ իմ աղա-
էջ 41, չեալ զՍ. Գրիգոր գնալ ի վանսն իմ . . .
42, 43, Քանզի սմանք տեսեալ զզօրսն Յունաց, համ-
44, 45, ամբողջ, բաւեցին՝ թէ իշխանքն հիւսիսոյ (էջ 41)
էջ 46, 1—25 թագաւորին ծանր զօրօք գան ի վերայ . . .
Իբրեւ եկաք ի տեղին Իննակնեան . . . Եւ

# ԱՂԲԻՒՐՆԵՐ

Անյայտ.

Ագաթ. Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ թագաւորեաց
էջ 645, 21—26 Կոստանդիանոս ... եւ հաւատաց նա յԱս-
էջ 649, 19—23 տուած արարիչ երկնի եւ երկրի ... ի
էջ 650, 4—7 յայնմ ժամանակի լոյս եղեւ այս յերկիրն
էջ 653, 15—17 Հայոց Մեծաց՝ է քառան թագաւորու-
թեանն արշակունւոյ առ Տրդատ ... Ա-
պա իբրեւ լուաւ զայս ամենայն մեծ արքայն
Հայոց, խորհուրդ առնէր վասն ճանապար-
հացն այնոցիկ (այսինքն է՝ ի Հռոմ) ...
մանաւանդ վասն աստուածածանօթութեան
նորա առաւել փութանակ լինէր .... ընդ նմա ...,

Անյայտ.

առաքեաց առ մեզ Աղբիանոս զերկուս սարկաւագն (էջ 42) ուսուցանողս... Եւ առնել Ս. Գրիգորի զգասս պաշտօնէիցն... քանզի Թագաւորն հրամայեաց Թուել եւ զԹիւն ի բուն (43) խաչին ես գրել... Եւ իբրեւ կատարեցին զպաշտօն... Եւ ինքեանք յառաջեալ գնացին բազում աւուրց օԹեւանօք զանց առնէին, մինչեւ հասին ի Հաւմ քաղաք. եւ անդ կացեալ սակաւ աւուրս դարձան մեծաշուք պատուով... զի մինչ Տրդատ զիննակնեան (44) խաչն կանգնեաց... Եւ սկսան իշխանքն մեր ելանել ընդդէմ նոցա... Բայց Թագաւորն եւ Գրիգոր... Որոց եկեալ յառաջն (էջ 45) արգելուին զնա ի գլուխ Արձանին... Իսկ զօրն հիւսիսի որպէս գիպող ժամանակ գտեալ, յարձակեցան... Եւ ապա դարձեալ Թագաւորն ի փոքր կոտորածէն, եւ ի գլուխ Արձանին... Թագաւորն Հիւսիսոյ... առաքեաց Թուղթ առ (էջ 46) Տրդատ՝ Թէ ե՛կ ի վաղիւն ասպուք պատերազմ... Իսկ իբրեւ ամենայն զօրքն սկսան ընդդէմ իրերաց անցանել, ձայն բարձեալ արքայն Հիւսիսոյ ասէր. Արքա՛յ Հայոց, ինձ մատի՛ր։ Եւ իբրեւ եկին ընդդէմ իրերաց, սկսան իբրեւ զմրճաւորս քարահատաց, կամ իբրեւ զուռնածս որք պատեն զշանԹս հրայրեացս մինն առնոյր եւ միւսն իջուցանէր։ Քանզի արքայն Հիւսիսոյ մեծահասակ էր եւ կորովի իբրեւ զՏրդատ եւ բազում կռուեալ միմեանց, ոչինչ եղեւ։

§ 27. Բայց սկսաւ պակասիլ արքայն Հիւսիսոյ.
էջ 46, 25—34 եւ գիտացեալ եԹէ մեռանելոց եմ, եւ քանզի
էջ 47, 1—10 ճօպանաւոր էր՝ աճապարեաց եւ ձգեաց եւ

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

Մ. Խոր. . . . . Զոր տեսեալ թագաւորին Թաս-
Բ. 85 էջ 168, լաց, մօտ հասանէ յարքայն (Տրդատ)։ եւ
19—30 հանեալ յապարանէն զներգեայ քեմոատա-

զծօպանն, եւ արգել զաղթերն ընդ պարա-
նոցն եւ փութանակի դարձաւ եւ կոխեաց
զծօպանն, մինչ զի, եւ չկարաց բնաւ շարժել
զձեռն Տրդատ։ Եւ մտրակեալ զկուշտ երի-
վարին զկնի Գեղաւեհոնին, այնպէս փութա-
ցեալ մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի
իւր տասն քայլ։ Իբրեւ եհաս նմա, ասէ.
Կատաղի շուն, խառանեցեր զկնի քո ջուացդ։
Եւ ամբարձեալ զաջ ձեռն իւր ի վեր, իջու-
ցանէր զսուսերն ի վերայ ձախոյ թիկանն
Գեղաւեհոնի. եւ անցուցեալ ընդ գօտին, եւ
զողն երիվարին հանդերձ գլխովն բաժանեալ
յերկիր ձգեաց։ Եւ այն էր զարմանալի, զի
գլուխն եւ աջ ձեռնն եւ աջ ոտն ընդ մի-
մեանս եւ ողն երիվարին ընդ մէջ հերձեալ
թաւալէին։ Զոր իբրեւ ետես իշխանն Ան-
գեղտանն ի վերայ ածեալ զահեակ թեւն,
եւ ձայն տուեալ ասէր. Իշխան Սիւնեաց, ի
մէջ ած զզունդ այծուցդ, զի անկաւ հոնն քօշն,

§ 28. Իսկ նա ընդ մէջ ածեալ, եհատ զզօրսն. եւ
էջ 47, 10—35 անցեալ յաջ թեւապետն Հիւսիսոյ, ասէ
էջ 48, . . . եւ յարձակեցան ի վերայ զօրացն Հայոց,
49 ամ. բաղձիմն. եւ սկսան (էջ 48) յանխնայ կոտորել . . .
չեւ վեր. էր. Զոր իբրեւ դարձաւ թագաւորն եւ իշխանքն
յԱրձանն, եւ իջին առ Ս. Գրիգոր ի տեղին,
ուր Ս. Կարապետն էր, մեծ գոհութիւն Աս-
տուծոյ եւ պատարագս ողջակիզաց մատու-
ցանէին ազխատակ[1] զուարակաց եւ նոխազաց
եւ բազում գառանց . . . Իսկ Նորա որք
փախստական գնացին մինչեւ ի Հարք . . .

---

[1] Համեմ. Աֆ—Բանֆեղէ էջ 34, տող 5—17 «. . . ազխա-
տակ ցլուց եւ ազխատակ նոխազաց, ազխատակ ձիոց եւ ազխատակ
ջորւոց . . . զհայրենեաց պաշտամանց տեղիսն մեծարէր
(խորով)»:
Ծ. Հեղ.

# ԱՂԲԻՒՐՆԵՐ

ԷՋ 169, 1—6 պատ պարանն¹, եւ կորովութեամբ ջփեալ յետուստ կողմանէ, ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն եւ յանութ աջակողմանն. զի էր վերացուցեալ զձեռն ածել ումեք սուսերաւ. եւ ինքն փառեալ վերա պահպանակօք, ուր ոչ գծէին նետք. Եւ քանզի ոչ կարաց շարժել նետամբ զհսկայն, զանձինս առ երիվարին. եւ ոչ այնչափ ինչ շութափեաց մտրակել զերիվարն, քան թէ աճեալ ձեռամբն ի ներքեայն աճապարեալ սկային, եւ սաստկութեամբ ուժոյն զիւրեաւ ցանցեալ, ի ճահ դիպեցուցանէր զերկուսայրին, եւ ընդ մէջ կարէր զայրն եւ ընդ զոյգ պարանոցին զգլուխ երիվարին. Իսկ զօրացն ամենայնի ատեսեալ զթագաւորն իւրեանց եւ զզօրաւորն միջակտուր յայնպիսի աճաւոր բազկէ լեալ, ի փախուստ դառնային. զորոց զհետ մտեալ Տրդատ, վարէ մինչեւ յաշխարհն Հոնաց.

Անդ այս.

---

¹ Տրդատի նահատակութեան նկարագրութիւնը Խորենացին քաղում է Յովսեփոսից (Bella Jud. VII, 29), որ այս անցքը վերագրում է՝ Ներոն կայսեր ժամանակակից՝ Հայոց Տրդատին (Ա.)՝ Ալաններն ի Հայս արշաւելու միջոցին, — այն զանազանութեամբ միայն, որ Ա. դարու անցքը փոխադրում է մեր Պատմութեան Հայրը Դ դար՝ համանուն հայ թագաւորին յատկացնելով այն. — Զենոբ՝ իբրեւ Մեծ Տրդատին ժամանակակից, չէր կարող անշուշտ այսպիսի մի դէպքի վկայութիւնը հաստատել. Ծ. Հէն.

## ԶԵՆՈԲ

*Եւ որ գնացին ի գաւառն իւրեանց, էին վեց (էջ 49) հազար. բայց մինչ ի Տարօն մտին՝ յիսուն եւ ութ հազար էին . . . Զօր եւ զկնէք պայորին՝ եթէ կամի ոք իմանալ, յայլ պատմագրէ ծանիցէ. բայց առ ի մէնջ պայոզքին պատասխանի բաւական լիցի ձեզ . . . Արդ աղօթիւք ձերովք պահեսցէ Տէր զհաւատս մեր եւ զձերդ ի խաղաղութիւն շնորհիւ Տեառն: Ողջ լերուք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս:*

---

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ԱՂԻՒՍԱԿ
## ԶԵՆՈԲԻ ԵՒ ԻՒՐ ԱՂԲԻՒՐՆԵՐԻ

| | | | |
|---|---|---|---|
| § 1. | էջ 20 | տող 1—8 | Ագաթ. էջ 29 (տող 1—4 31, (13—14) 31 (24—26), 32 (1—2, 24, —25), 33 (2—21) 35 (1—11). |
| § 2. | 20 | 8—11 | Անյայտ. |
| § 3. | 20<br>21 | 11—18<br>1—9 | Ագաթ. 36 (12—24), 37 (8—19), 38 (18—26), 39 (1—2), 41 (14—17). |
| § 4. | 21 | 10—11 | Սեբէոս. 36 (19—20). |
| § 5. | 21 | 11—27 | Մ. Խոր. 155 (1—8), Բ. 74, 160 (15—24), Բ. 80. |
| § 6. | 21 | 28—30 | Ագաթ. 40 (23 26), 41(4—6). |
| § 7. | 21 | 30—33 | Անյայտ. |
| § 8. | 21 | 34—35 | Սեբէոս. 36 (17—18). |
| § 9. | 21<br>22 | 35—36<br>1—4 | Անյայտ. |

## ԱՂԲԻՒՐՆԵՐ

---

| | | | |
|---|---|---|---|
| | 22 | 4—7 | Վարք. Ս. Յակոբայ. (Սոփ. ԻԲ. 5 (12—15). |
| | 22 | 7—17 | Անյայտ. |
| | 22 | 17—21 | Վարք. Ս. Յակոբայ. (Անգ. (տ. 16—17). |
| § 10. | 22 | 22—36 | Մ. Խոր. 160 (24—27), 161 (3—14) Բ. 80. |
| § 11. | 22<br>23 | 36—37<br>1—11 | Ագաթ. 49 (1—2), 43 (16—24), 102 (1—10), 103 (2—11), 164 (17—25), 165 (9—11), 167 (5—9), 171 (11—17), 183 (4—6) 181 (17—1.). |
| § 12. | 23 | 11—15 | Անյայտ. |
| § 13. | 23 | 16—32 | Ագաթ. 518 (8—25), 551 (7—15), 596 (1—11), 597 (22—27), 598 (1—8), 602 (13—16), 603 (2—3), 604 (5—8, 20—24), 607 (14—20). |
| § 14. | 23<br>24 | 34—37<br>1—31 | Անյայտ. |

| | | | |
|---|---|---|---|
| § 15. | 24 | 32—34 | Աէ-Բ. 604 (23—26), 605 (1—6). |
| § 16. | 24 | 34—3⟩ | Անյայտ. |
| | 25 | 1—4 | |
| § 17. | 25 | 4—6 | Աէ-Բ. 606 (9—26). |
| § 18. | 25 | 6—29 | Անյայտ. |
| | 26—31 | ամբողջ | |
| | 32 | 1—9 | |
| § 19. | 32 | 9—26 | Աէ-Բ. 585 (18—26), 586 (1—2), 58. (22—26), 585 (1—13). |
| § 20. | 32 | 26—35 | Անյայտ. |
| | 33—34 | ամբողջ | |
| | 35 | 1—6 | |
| § 21. | 35 | 9—17 | Աէ-Բ. 620 (15—25), 621 (7—25), 622 (13—14), 623 (7—15). |
| § 22. | 35 | 17—36 | Անյայտ. |
| | 36—37 | ամբողջ | |
| | 38 | 1—7 | |
| § 23. | 38 | 7—19 | Աէ-Բ. 607 (25—26), 608 (1—11). |
| § 24. | 38 | 19—36 | Անյայտ. |
| | 39 | ամբողջ | |
| § 25. | 40 | 1—6 | Աէ-Բ. 645 (21—26), 649 (19—23), 650 (4—7), 653 (15—17). |
| § 26. | 40 | 7—28 | Անյայտ. |
| | 41—45 | ամբողջ | |
| | 46 | 1—25 | |
| § 27. | 46 | 25—34 | Մ. Խոր. 168 (19—30), 169 |
| | 47 | 1—10 | (1—6), Բ. 85. |
| § 28. | 47 | 10—35 | Անյայտ |
| | 48, 49 | ամբողջ | |
| | | մինչեւ վերջը։ | |

---

# ՄԱՍՆ Բ.

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ

Անցնինք այժմ մի առ մի քննելու նախընթաց յօդուածները։

§ 1. Այս յօդուածում ուշադրութեան արժանին այն է, որ Ագաթանգեղի "բնութեան եղբայրութեան" դարձուածը ուղղակի "եղբայր"ի է փոխած, — որ ոչ թէ Ջենոբի ճշգրտութեան կամ զգուշաւոր քննութեան վերագրելու է, այլ միայն իւր իսկական աղբիւրը բառացի չկրկնելու դիտմամբ՝ պատահական բառադարձութեան։ Եղբայր (ἀδελφός) ունի նաեւ Ագաթանգեղի յոյն թարգմանութիւնը[1], — որով ուրեմն Խոսրով եւ Արտաւան եղբայրներ են ճանաչվում եւ Վաղարշ թագաւորի որդիք։ — Մ. Գարագաշեան[2] փաստօրէն մի անգամ եւս ապացուցանելով Խոսրովի, Արտաւանի որպէս եւ Անակի հարազատութիւնը՝ մոռանում է սակայն յիշել՝ թէ ում որդիքն էին դոքա, ով էր դոցա հայրը։ — Այստեղ պատեհ չէ երկար կանգ առնել այս խնդրի վերայ, բայց համառօտակի կը դիտեմ միայն, որ՝ ըստ իս՝ աւելի հաւանական է ենթադրել, որ այդ Վաղարշը, Խոսրովի հայր Վաղարշը, ոչ թէ Հայոց, ինչպէս սովորաբար ընդունում են մեր տոհմային պատմագիրները, այլ Պարթեւաց թագաւոր էր։ Թէ արեւմտեան պատմիչների միաբերան վկայութիւններից եւ թէ դրամների ցուցմունքներից պարզ երեւում է, որ Արտաւան (Ե.)

[1] Agathangelos und die Acten Gregors von Armenien, neu herausgeb. von P. de Lagarde. Göttingen, 1887, p. 8.

[2] Քննական պատմութիւն Հայոց, Կ.Պոլիս, 1880, էջ 88—89։

Պարսից կամ Պարթևաց Վաղարշ Դ.ի (191—209 Յ. Ք.) որդին էր, որ և՛ հալածելով իւր եղբայր Վաղարշ Ե.ին՝ բռնի տիրացաւ Արեաց գահին (216—227.)[1] — Արդ՝ ընդունելով համաձայն տոհմային պատմութեան՝ Խոսրովի և Արտաւանի եղբայրութիւնը, որ հաստատվում է նաև արտաքին պատմիչներից,[2] երկուսն ևս ուրեմն Պարթևաց Վաղարշ Դի որդիքը պէտք է ճանաչուին՝ մէկը թագաւորելով Պարսկաստան և միւսը Հայոց աշխարհ՝ ինչպէս յաճախ պատահած է Արշակունեաց հարստութեան մէջ՝ սկսեալ հին ժամանակներից,[3] նաև մի տեսակ աւանդական իրաւունք դարձած։ Եւ ի հարկէ այն պատճառով էր Հայոց Արշակունին Երկրորդ համարվում, որ Պարսից Արշակունու կամ Արքայից արքայի կրտսեր որդին կամ եղբայրը Հայոց աշխարհին էր թագաւորում՝ մեծ կամ անդրանիկ որդուն պահելով Արեաց կամ տոհմին գահը։ — Այսու՝ Հայոց Վաղարշ թագաւորի վաւերականութիւնը, այնպէս ինչպէս Խորենացին է աւանդում (Բ. 65), — այսինքն իբրև հայր Խոսրովի՝ բնականաբար խախտվում է. թէև նոյն (Վաղարշ) անունով Հայոց՝ ժամանակակից նաև դաշնակից Պարսից համանուն Վաղարշ Դ.ին՝ թագաւոր յիշվում է արևմտեան պատմիչներից 195—218

---

[1] Geschichte Irans und seiner Nachbarländer von Alexander dem Grossen bis zum Untergang der Arsaciden, von A. v. Gutschmidt. Tübingen, 1888, p. 154.

[2] Procop. de Aedif. Just. III, վկայում է, որ Արտաւան թագաւորեցրեց իւր եղբօրը Հայերի վերայ՝ փոխանակ Խոսրովի՝ Արշակ կոչելով նորան, թերևս այդ անունը ընդհանրապէս արքայի նշանակութեամբ գործածելով, որ անսովոր չէ և այլ մատենագիրներին։

[3] Օր. Վոնոն (16—18 Յ. Ք.), որ Պարթևաց Հրահատ Դ.ի որդին էր, Տրդատ (Ա.) Ներոնի ժամանակակիցը, որ Պարթևաց Վաղարշ Ա.ի եղբայրն էր (Tacit. Annales, II, 3, XV, 14)։ Նոյնպէս Պարթամասիր (մօտ 110 Թ.) որ Պարթևաց Բակուր թագաւորի որդին էր։ (Dio, LXVIII, 17).

թուերին. նա մեռաւ բանտի մէջ՝ Հռոմում եւ նորան ժառանգեց իր որդին Տրդատ (Բ)՝ տարբեր Մեծն Տրդատից (Գ.) — Անտոնինոս կայսեր օրով[1]։

§ 2. Ի՞նչ հաշիւ եւ պահանջ ունէր Ճենաց արքայն միջնորդ լինելու Հայոց եւ Պարսից մէջ. Ճե՞նք ուր, Հայք ուր։ — Արդեօք այս Ճեն+ նոյն չէ՞ որ 22-րդ էջում պատահում է ձեռագիրների տարբեր ընթերցուածով նաեւ "Ճահէն եւ Դարդանդայ" կամ "Դարբանդայ,"[2] եւ որ գուցէ հիւսիսային Կովկասում որոնելու է։ — Ս. Էջմիածնի 2 ձեռագիրները[3] (մէկը հաւանականօրէն ԺԳ. եւ միւսը ԺԵ. դարու) ունին անմիջապէս § 1ից յետոյ. "(... գերութեամբ։) Որ թէպէտ բազում անգամ (արքայն Ճենաց) յղեաց նմա (Խոսրովու) պատարագս եւ հրեշտակս խաղաղութեան, այլ ոչ եղեւ հնար գտանել (Ա. ձեռգ. դաւանել) զխաղաղութիւն, թէպէտ եւ բազում անգամ եղեւ միջնորդ ..." — որ պակասում են տպագիր օրինակներում եւ որ յետին յաւելուած համարելու է։ Յամենայն դէպս Հայ եւ Ճեն ազգերի դիւանական յարաբերութիւնների մասին Գ. դարում ոչինչ յայտնի չէ՝ ոչ մեր եւ ոչ օտար պատմիչներին.

§ 3. Այս 16 տողն եւս համառօտութիւն է Ագաթանգեղի 5 երես բնագրի, որի խօսքերից բուական թուով՝ հակառակ հեղինակի կամքին՝ պահպանուել են այստեղ։ Ի մէջ այլոց՝ Ագաթանգեղի "ձիւնատոյն" բառը (էջ 40), որով նկա-

---

[1] Dio, LXXI–LXXVIII.

[2] Ուխտանէս (Ա. էջ 79) ունի "Ճենաց եւ Դարդանդացն", Վարդան (հրատ. Էմինի, էջ 54) "Ճենաց եւ Դարբանդայ,", Ներբողեան Լուսաւորչի (Սոփ. Ե. էջ 48) "Ճենաց եւ Դարպանդայ", Հ. Զամչեանի ձեռագիրը ունի "Ճահէնն եւ Դրբանդուայ" (Պատմ. Հայոց. Ա. էջ 614)։

[3] Լազարեան Ճեմարանի Մատենագիտական Դասարանների (Լիկէոնի) մատենադարանում կայ Զենոբի Պատմութեան մի Բաղդատութիւն (ձեռագիր) Ս. Էջմիածնի 5 ձեռագիր եւ 2 տպագիր հրատարակութիւնների հետ՝ աշխատասիրութեամբ Պր. Ա. Պետրոսեանցի (1891 թ.)։

թողնում է նա գարնան պատճառով Երասխ գետի բարձրանալը, Զենոբ «Ջրասոյղ» է փոխում՝ առանց ակնարկելու ջրի մասին, ուստի եւ անհասկանալի է մնում «Ջրասոյղ» բառի գործածութիւնը։

§ 4. Թէ Սեբէոս ծանօթ էր հեղինակին՝ այդ երեւում է եւ այլ տեղից. համեմ. § 8։ Բացի դը-րանից անուշադիր թողնելու չէ նաեւ Յովհան Մամիկոնեանի փոխառութիւնները Սեբէոսից՝ տեղ տեղ անգամ բառացի։ (Համեմ. օր. Յովհ. Մամիկ. էջ 12, 13, 14 եւ Սեբէոս, էջ 40, 41, 42)։

§ 5.} Այս երկու յօդուածը քաղուած են ան-
§ 10.} միջապէս Խորենացու Բ. գրքի 80-րդ գլխից։ Ինչը Պատմահայրը այս մանրամասնութիւնները առել է իր աւելով՝ Արտիթէս եպիսկոպոսի թղթից, որ սակայն միւս մատենագիրներին անծանօթ է մնացել։ Բուրգար անունը, որ քանիցս պատահում է այստեղ՝ ըստ վերայիշեալ Ս. Էջմիածնի 2 գրչագիրներին, գրվում է Բոնդար, ո-րպէս եւ Արշողի փոխարէն Արշողունին Ս. Էջմիածնի մի ձեռագիրը եւ Ա. տպագիրը (Կ. Պոլիս, 1719)։ Յետին պատմիչներից Արշողուն են գրում Արշողի տեղ նաեւ Կիրակոս եւ Թովմա Մեծոփեցի։

§ 6. Այս յօդուածը, ինչպէս պարզ երեւում է, կրճատուած է Ագաթանգեղից։

§ 7. Անյայտ աղբիւրից քաղուած եմ համարում եւ այս յօդուածը՝ Գրիգորի մայր Ոգոհիի արժանահաւատ պատմագիրներին անծանօթ մնացած անունը մէջ բերած լինելու պատճառով։ Հին գրականութեան մէջ այդ անունը մի անգամ եւս պատահում է Բարթողիմէոս Առաքեալի վկայաբանութեան[1] մէջ, ուր Ոգոհի է կոչվում Սանատրուկի հաւատացեալ քոյրը, — մի գրուած, որ ըստ իս կազմուած է Թադէոս Առաքեալի վկայութեան[2] նմանութեամբ եւ հետեւողութեամբ՝ սորանից

[1] «Սոփ. Հայկ.» ԺԹ. էջ 26։
[2] «Սոփ. Հայկ.» Ը։

բաւական ուշ եւ հաւանականօրէն Ժ. դարուց յետոյ։ — Ոգոնի անունը ձեռագիրներում գրվում է պէսպէս ձեւերով. մի քանիսը ունին Թոգոնի[1], այլք՝ Ագոորնի եւ ոմանք՝ Ոգորնի, որից գուցէ եւ առաջացել է Ոգոնի։ Սորա ստուգաբանութիւնը գոնէ ես դժուարանում եմ մեկնել։ Ոգոնի ունին նաեւ Լուսաւորչի ներբողեանները[2], որ ԺԲ. դարուց յետոյ են գրուած երեւում։

§ 8.} Ութերորդ յօդուածը, որ հազիւ երկու
§ 9.} տողից է բաղկացած, ինձ թվում է՝ Սեբէոսից պէտք է փոխ առած լինի Զենոբ կամ ով որ է Տարօնոյ Պատմութեան հեղինակը։ Միայն թէ այդտեղ պատահում է Սեբէոսին, որպէս եւ աւելի հնագոյն պատմիչներին անծանօթ Սոսրէն անունը, որ ինձ ոչ լիովին ստոյգ է երեւում։ Իններորդ յօդուածում, (որ ես անյայտ աղբիւր եմ անուանում), արդէն մէջ է բերած Սուրէնի եւ Լուսաւորչի ազգակցութիւնը Զգօնի հետ, եւ այդ առթիւ բաւական խառնակ ոճով եւ անտեղի յիշուած է Զգօնի քոյր Անկղնէն, սոցա մայր Խոսրովուհին եւ վերջինիս ամուսինը — պարզ չէ՝ արդեօք Հեփթաղի թագաւորը Ջուանշիր թէ Տիրան թագաւորը, որոնք բոլորեքեանն եւս կասկածելի են թվում։

Կանգ առնենք նախ Յակոբի կամ որ նոյնն է ըստ Զենոբայ՝ Զգօնի եւ Լուսաւորչի ազգակցութեան խնդրի վերայ։

Ազգային հնագոյն մատենագիրներին այդ ազգակցութիւնը բնաւ ծանօթ չէ։ Զգօնի մասին Ագաթանգեղ եւ ոչ մի խօսք չէ յիշում. Բուզանդ՝ պատմելով Մծբնայ եպիսկոպոս Յակոբի՝ հարաւային Հայոց աշխարհում գործած հրաշքների մասին, հետաքրքրական դիտողութիւն է անում. — "որում

[1] Չամչեան, Պատմ. Հայոց, Ա. 586։
[2] "Սոփ. Հայ.", Ժ. էջ 46 եւ 80։

անուն Յակոբ՝ փոխանակ¹ Զգօն Պարսիկ կոչեր»: Նոյն հրաշքները աւելի համառօտ կրկնում է եւ Խորենացին (Գ. 7): Բայց երկուսն էլ ոչ մի ակնարկութիւն չեն անում Լուսաւորչի հետ ունեցած նորա ազգակցութեան մասին, որ անշուշտ չէր կարող անյայտ մնալ նոցա, եթէ այդպիսի ինչ արդարեւ եղած լինէր: Նոյնը ասելու է եւ Ասողիկի մասին, որ ծաղկաքաղ է անում Խորենացուց եւ քայլ առ քայլ հետեւում նորան. իսկ Յովհաննէս կաթողիկոս եւ Թովմա Արծրունի Յակոբ Մծբնացու անունն անգամ չեն յիշում:

Նոյն իսկ «Զգօն» գրքի հայերէն թարգմանութեան² սկզբում անվաւեր թղթի («Ս. հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին առ Ս. Յակոբ եպիսկոպոս Մծբին քաղաքի») յիշատակարանից, որպէս եւ «վասն հաւատոյ» ճառի Լուսաւորչին ընծայած խորագրից (որ նոյնպէս պակասելով Ասորի բնագրում՝ յետ ժամանակի յաւելուած լինելու է.³) — չէ երեւում, որ այդ երկու անձանց մէջ որ եւ է ազգակցութիւն կար: Դարձեալ՝ Յակոբի Վարքերից (գուցէ հնագոյն) կան այնպիսիք, ուր բնաւ չէ յիշվում ոչ նորա ծագումը եւ ոչ որեւէ ազգակցութիւն Լուսաւորչի հետ⁴: Ազգակցու-

¹ Այսպէս եմ ուղղագրում ես բնագրի (Դպ. Գ. գլ. 10) «Յակոբ փոխանակ աչխառն Պարսիկ կոչեր», մասամբ միայն ընդունելով Պր. Եղիշէ Մասաթեանի (Փաւստոս Բուզանդ, 1890, էջ 30) առաջարկած սրամիտ ուղղագրութիւնը («Յակոբ որդի ժե — Անձոյ Զգաւն Պարսիկ կոչեր»): Համեմ. Գեննադիոսի Jacobus cognomento S a p i e n s Nisibenae nobilis P e r s a r u m modo civitatis episcopus (Հ. Գ. Զարբհանալեանի Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 24):

² Գիրք, որ կոչի Զգօն, Կ. Պոլիս, 1824:

³ Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 31—33:

⁴ Այդ տեսակին է պատկանում նորերս Ս. Էջմիածնի Մատենադարանից մեր ստացած գրչագիրներից մէկը, որ յաւելուած է ԺԲ—ԺԳ. դարու Զգօնի ճառերի սկզբին — ի՛ր գրութեամբ բոլոր երեւութին ժամանակակից ճառերին (բոլորգիր, — գրչութիւն) եւ բովանդակութեամբ բաւական տարբեր «Սոփերքի» (Ի.Բ.) եւ Կ.Պոլսում հրատարակած Զգօնի «Վարքից»: Օգտվում եմ դէպքից իմ շնոր-

թեան գաղափարը առաջանալուն գուցէ առիթ տուած լինի՝ Զգօնի Ճառերի հայերէն թարգմանութենից բաւական յետոյ եւ յամենայն դէպս Ե. դարուց զկնի — Լուսաւորչի Նամակում գործածած "եղբօյր" բառը, որից՝ ըստ իս, առաջինը օգտուած պէտք է լինի եւ այն՝ դեռ բաւական չափաւոր. Յակոբի մի հին վարքագիր՝ աւանդելով.[2] "եւ ոմանք (*) հակառակին յառաջին բանս, ոչ ասելով զնա յազգէն Արշակունեաց, կամ հօրաքեռորդի Ս. Գրիգորի, զոր մեք սերտ գտեալ եւ հաւանեալ ի գրոց Ասորւոց . . . ". Այնուհետեւ պատմում է նա համառօտ՝ թէ երբ որ Գրիգորի դայեակները փախցրին նորան Կեսարիա, նորա "համացեղ" Յակոբին եւս իւր դայեակը տարաւ Կապպադովկիա, ուր եւ "սնեալ եւ լցեալ աստուածային իմաստիւք եւ ազդմամբ Ս. Հոգւոյն յուղի անկեալ գայր հասանէր յերկիրն Ասորւոց, մերձ ի քաղաքն Մծբին . . . ": — Այսքան: Անանուն վարքագիրը դեռ չէ յիշում ո՛չ Յակոբի հօր, մօր ու քրոջ անունները եւ ո՛չ նոցա կեանքին վերաբերեալ պարագաները: — Յակոբի միւս վարքագիրը (ըստ ժամանակին աւելի յետին), որ մեծ տարբերութիւններ ունի հնից, ի միջի այլոց առաջ է բերում արդէն Մծբնայու բոլոր ազգականների անունները՝ մանրամասնութիւններով հանդերձ, թէեւ յայտնի չէ՝ ո՛ր տեղից: "Ս. Յակոբ Մծբնայ հայրապետն էր ազգաւ Պարթեւ եւ ազգական Ս. Լուսաւորչին մերոյ, զի էր որդի Խոսրովուհեայ՝ քեռն Անակայ որ էր հայր Լուսաւորչի մերոյ: Այս Ա-

---

հակալութիւնս յայտնել Գերապ. Սրբազան Արիստակէս եպս. Սեդրակեանին, որ ըստ իմ խնդրանաց, հաճել էր ուղարկել ինձ յիշեալ ձեռագրի պատճէնը:

[1] "... Ցայժմ ամենայնի եղբայր էս այնպէս հաւատացեալ եմ. աղաչեմ զքեզ. զի գրեսցես եւ խելամուտ արասցես զիս, թէ ո՞րպիսի գործ պիտոյ է այսմ հաւատոյ մերոյ եւ հանգուցես զիս:" (Լուսաւորչի Նամակի վերջը. տես Զգօն, եջ 4—5:)

[2] Սոփերք Հայկականք. ԻԲ. եջ 5—7:

նակ յորժամ փախստական եղեւ տամբ իւրով յե-
րեսաց արքային Խոսրովու՝ հօրն Տրդատայ, յայն-
ժամ որպէս զմանուկն Գրիգոր փախստեայ բերին ի
Կեսարիա, նոյնպէս ընդ նմին եւ (զ)Յակոբ բերին
անդ, ուր սնաւ եւ ուսաւ զհաւատս քրիստոնէու-
թեան։ Էր եւ այլ մանուկ մի Սուրէն անուն եղ-
բայր Լուսաւորչին. սա տարեալ եղեւ ի Պարսկաս-
տան եւ սնաւ ի ձեռն Խոսրովուհեայ մօրն Յակո-
բայ։ Եւ Յակոբ ունէր առ իւր ի Կեսարիա քոյր մի
Սոֆիէ անուն, որ յետ ամման հասակի առաքեաց
զՅակոբ տանել զինքն ի Պարս. վասն որոյ եւ Յակոբ
առեալ զքոյր իւր եւ տարեալ ի Պարս, ուրանօր
ամուսնացաւ Սակդեն, եւ Յակոբ . . . բազմերկնային
շնորհաց՝ ոչ կամեցաւ կալ ի Պարսկաստան առ
մերձաւոր արքունիս, այլ թողեալ զամենայն ազ-
գականս իւր, ել եւ գնաց ի կողմանս Ասորւոց . . .
մերձ ի քաղաքն Մծբին[1] . . . ։„

Իսկ Զենոբ՝ կրկնելով վերջին վարքագրի
աւանդած Յակոբի ազգականների անունները, նոր
պարագաներ եւս աւելացնում է սոցա մասին, որ
բնաւ անծանօթ են յիշեալ վարքագիրներին. այն է՝
Լուսաւորչի եղբայր Սուրէնի Ճենաց Երէքըը քեուլը ե-
այնպէսը Բոգոսուրէւը ժթ տուրէ. — Լուսաւորչի հօ-
րաքոյր եւ Յակոբի մայր Խոսրովուհու ամուսին
Հեթֆրոշէ Բոգոսուրէ անունը Զատանէր եւ իսկոյն
կրկին անգամ նոյն Խոսրովուհու ամուսին Տեփան
Բոգոսուրէ անուն յիշելը եւ նորա մահը, որին սպա-
նել էր պատերազմում Լֆնոց Ուֆֆեօ տըւայն. —
Յակոբի քոյր Ասկդնէն, նորա ամուսնանալը, նորա
որդին, որ ճնաց Գրնոց ոչէորհը եւ այնպէսը Բոգոսու-
րէց, "զոր յետոյ Տրդատ ըմբռնեաց, ասում է Զե-
նոբ, մինչ առ արքային Յունաց էր . . . ։„[2] — Զե-
նոբ մինչեւ անգամ ցոյց է տալիս այն աղբիւրը,
որից քաղել է ինքը այս տեղեկութիւնները . . .

---

[1] Զեն., էջ 407։
[2] Տես վերը, էջ 8. 10։

«ընթերցի՛ր զԹագաւորութիւն Հեփթաղենիկայ Հելլենացի գրով եւ կամ զԹագաւորութեննէն Ճենաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի, առ Բուզ-պատմագրի.»[1]

Քննենք մի առ մի այս յաւելուած պարագաները՝ սկսելով Լուսաւորչի եղբայր Սուրէնից։

Ագաթանգեղոս՝ պատմելով Անակայ ցեղի կոտորման մասին, ասում է[2] թէ «միայն երկուս մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթեւին պրծուցեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն՝ զմին ի կողմանս Պարսից եւ զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին», առանց յիշելու նոցա անունները։ Յաջորդ էջերից երեւում է, որ Յունաց կողմերը փախցրած մանուկը՝ այնտեղ կրթուելով քրիստոնէական ոգով, Գրիգոր է կոչուել. բայց թէ ի՞նչպէս էր Պարսկաստան փախցրած մանուկի անունը եւ ինչ եղաւ նորա վիճակը, ոչինչ չէ ասում պատմագիրը։

Սորանից ոչ աւելի աւանդում է եւ Խորենացին, թէեւ սա իւր ձեռքին ունէր Արտիթէսի Թուղթը Լուսաւորչի վարուց մասին[3]։

Միայն Սեբէոսն է, որ հաղորդում է, թէ Խոսրովի կոտորածից ազատուած մանկահասակ Անակի մի զաւակին փախցրին դայեակները Պարսից դուռը. «եւ կատարեաց արքայն (Արտաշիր) ի վերայ նորա զպարգեւս խոստացեալս հօրն նորա Անակայ զբուն իսկ զՊարթեւական զՊալհաւն անդրէն դարձուցեալ Նաք Նաղեալ մեծարեաց[4]»։ Բայց թէ ի՞նչ էր այդ մանկան անունը՝ Սեբէոս նոյնպէս լռում է։

Ո՞րտեղից ուրեմն եւ ի՞նչպէս յայտնուեցաւ Գրիգորի եղբայր Սուրէնի անունը։

---

1 Անդ.
2 Ագաթանգեղ. էջ 41.
3 Խորենացւոյ Պատմ. Հայոց, Բ. 80.
4 Սեբէոս, էջ 36.

Ինձ թւում է, թէ սորա ծագման սկզբնական շարժառիթը պէտք է տուած լինի Լուսաւորչի ցեղի "Սուրէն-Պահլաւ" կոչումը, որ Ե. դարուց շատ յետոյ ապրող հայ գրագէտներից ոմանք նախ իրեն՝ Լուսաւորչին եւ ապա նորա եղբօրն են վերագրել:

Զենոբի մի քանի ձեռագիր (երկուսը՝ Ս. Էջմիածնի եւ մէկը՝ Ս. Ղազարու) տպագրի "իսկ զմիւս եղբայր նորա (Գրիգորի), որ կոչէր Սուրէն անուն" խօսքերին անմիջապէս աւելացնում են՝ յայտնի չէ, ինչ տեղից առնելով — "իբրեւ պապուն իւրոյ" եւ կամ "որոյ նախապապունն էին եղեալ Սուրէն" . . . որից երեւում է Սուրէն անուան առնչութիւնը Պահլաւ ցեղի Սուրէն կոչման հետ: Աւելի արժանի է ուշադրութեան Զենոբի մի այլ ձեռագրի հետաքրքրական ընթերցուածը[1] (ըստ իս՝ քան նախընթաց յաւելուածները հնագոյն) վերաբերեալ Գրիգորի հեթանոսական անուանակոչութեան. "եւ մկրտեալ Գրիգոր, զոր մայր եւ հայր նորա Անակշատ[2] Սուրէն կոչէին:" Այստեղ եւս կրկնւում է տոհմային Սուրէն կոչումը, բայց վերաբերութեամբ Գրիգորին եւ ոչ թէ իւր եղբօրը, որին եւ վերագրել են այդ կոչումը յետին ընդօրինակողները՝ ձգտելով մի կերպ որոշել Անակի միւս որդու անյայտ մնացած անունը:

Իսկ Սուրէնի ճենաց (որ՝ ինչպէս վերը յիշեցինք, մի քանի ձեռագիր "Ճահէն" ունին եւ այլք՝ "Ճենաց եւ Դարգանգայ") երկիր գնալը եւ այնտեղ թագաւորելը, մասամբ միայն անհաւատալի պէտք է համարել: Արդէն Ագաթանգեղի աւանդածը՝ մանուկներից մէկի Պարսկաստան փախցնելու եւ Արտաշրի խնամման մասին եւ մանաւանդ

---

[1] Տես "Ագաթանգեղ եւ իւր բազմադարեան գաղտնիքը." Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկ, 1890, էջ 37:

[2] Պահլաւերէն Անակ-շատ Անակի ուրախութիւն է նշանակում:

Սեբէոսի բացարձակ վկայութիւնը «Նոր կոչեալ Մեծարեաց» (Արտաշիր), — տեղիք են տուել թ ա-գաւոր ճանաչելու Սուրէնին։ Բայց թէ ինչո՞ւ Ճենաց թագաւոր, երբ որ Պարսից արքայի խոստման համաձայն «Պալհաւի» տէրը պէտք է նա լինէր, եւ ի՞նչ տեղից է յայտնի, որ նա 19 տարի թագաւորեց Ճենաստանում, այս մնում է անստուգելի։

Մնացեալ անձերն եւս հազիւ ստոյգ լինին։

Ո՞վ է Անակի քոյր Խոսրովանոյշն. արդեօք Լուսաւորչի հետ Ցակոբի ազգակցութիւնը պնդելու նպատակով չէ՞ հնարած այդ անձնաւորութիւնը, որպէս եւ նորա անունը՝ արդեօք նմանութեամբ Տրդատի քոյր՝ մեծ օրիորդ Խոսրովիդուխտի չէ՞ կազմուած։ Թէ՛ Ուխտանէսի, թէ՛ Վարդանի եւ թէ՛ Լուսաւորչի Ներբողեանների[1] տեղեկութիւնները այս մասին յետին են եւ անշուշտ Զենոբի անմիջական ազդեցութեամբ առաջացած։

Ո՞վ է Խոսրովիդուխտի ամուսին Ջուանշէր Հեփթաղէ Նախարարը, որին մի քանի տող յետոյ Հեփթաղենէց եւս կոչում է հեղինակը. արդեօք չկա՞յ որեւէ առնչութիւն սորա եւ Սեբէոսի հաղորդածի հետ՝ Պարսից մեծ իշխան Ջուանշերհի[2] եւ Քուշանաց ազգի ու Հեփթաղէ արքայի[3] մասին՝ ի նկատի ունենալով առհասարակ Զենոբի ծանօթութիւնը Բագրատունեաց եպիսկոպոսի Պատմութեանը, ինչպէս վերը տեսանք արդէն։ Ջուանշէր անուան առաջանալուն առանց ազդեցութեան չէ երեւում ինձ նաեւ Կաղանկատուացու[4] պատմածը Աղուանից համանուն արքայի մասին։

Ընդհանրապէս պէտք է դիտել, որ Զենոբ մեծ դիւրութեամբ բաշխում է աջ ու ձախ ար-

---

[1] «Սոփերք Հայկականք», Ե։
[2] Սեբէոս, էջ 72։
[3] Անդ, էջ 67։
[4] Պատմ. Աղուանից Մովսէսի Կաղանկատուացւոյ, հրտ. Էմին. էջ 136։

քայական տիտղոսներ․ Թագաւոր է Լուսաւորչի եղբայր Մուրէնը, Թագաւոր է Խոսրովուհու ամուսինը Ջուանշէր, Թագաւոր է դարձեալ Ցակոբի հայրը Տէրան, Թագաւոր է նորա սպանիչ Լփնաց Ոփքէս, Թագաւոր է վերջապէս Ցակոբի Աոկգնէ տրոն ոբքին (ըստ յետնոց՝ Հրաչէ կամ Հրչէ)։

Ո՞վ է Տէրան Թագաւորը, որ Խոսրովուհու ամուսինն է կոչվում, թէեւ մի քանի տող առաջ նոյն հեղինակի վկայութեամբ Ջուանշէրն էր նորա ամուսինը։ Ջենոբի ձեռագիր եւ տպագիր բոլոր օրինակների այս միաբերան հաստատած անպատշաճութիւնը ձգտում է ուղղել Ուխտանէս[1] Լուսաւորչի հօրաքոյր Խոսրովուհուն ընդունելով ոչ թէ կին Ջուանշէրի, այլ "կին որդւոյն Ջուանշէրի"[2], որով Խոսրովուհու ամուսինը կամ Ցակոբի հայրը Տէրանն է ճանաչվում։ Ի՞նչ էր սորա ծագումը եւ որտեղ էր նորա թագաւորութիւնը, անյայտ է մեզ։

Նոյնպէս անծանօթ է Լփնաց Ոփքէս թագաւորը, որի անունը ձեռագիրները տարբեր են հաղորդում․ Ոփքէս, Իոփքէս, Լփնոփքէս (Ուխտանէս՝ շփոթելով երկու խօսքը), Աոփքէս (Վարդան)։

Ցակոբի քոյր Աոկգնէի անունը, որ մի քանի ձեռագիր եւս եւ Ուխտանէս եւ Վարդան՝ ըստ երեւութին շփոթ ընթերցմամբ, Սոկգէն ունին (ԱՍԿԳՆԷ—ՍԱԿԳԻԷՆ), գուցէ Աստուածաշնչի Աոբնէ (տիկին) լինի՝ փոքր ինչ աղաւաղեալ ձեւով, որ Ջգօնի հայերէն թարգմանութեան մէջ Վոբնէայ՝ բուն ասորական ձեւովն է պատահում։

Ոչ պակաս անստոյգ է թվում եւ Աոկգնէի որդին, որ գնալով Գթայ (երկու գրչագիր ունին Սակգենաց (՞) երկիրը՝ թագաւորում է այնտեղ եւ յետոյ իբր թէ Տրդատի հետ մենամարտում Ցու-

[1] Ուխտանէս, Ա․ էջ 79։
[2] Այսպիսի ընթերցուած ունի նաեւ Էմինի հրատարակած Վարդանի Ուսումնասիրութիւն թանգարանի օրինակը (էջ 54)։

նաց երկրում։ Զենոբի տպագիրները չունին այդ անձին անունը. բայց մի քանի ձեռագիր Հերակ են կոչում նորան, որից ըստ երեւոյթին եւ առել են Ուխտանէս[1] Վարդան եւ Դաշանց Թուղթը։

Արդարեւ՝ Զենոբ ի հաստատութիւն իւր պատմածին յիշում է այն աղբիւրը, որից նա քաղել է իւր տեղեկութիւնները 9-րդ § ի մասին. բայց որչափ հաւաստի է այդ աղբիւրը։ Բարդա պատմագիրը, որի գրուածը՝ հեղինակի առելով, պահվում էր Ուռհա քաղաքի դիւանում, պատահում է ձեռագիրներում Բարդեան եւ Բարդեճան ձեւերով, որին Ուխտանէս Բարդըծան Ուռհայեցի է կոչում։ Բարդայ կամ Բարդեան անունով Ուռհայեցի պատմագիր անծանօթ է. իսկ Բարդեծան կամ Բարդըծան՝ եթէ համանուն հռչակաւոր գնոստիկոսը ընդունինք, որ ունէր արդարեւ գրուածներ՝ թէեւ ոչ Ճենաց մասին յատկապէս, ապա վերջինս ծաղկում էր Բ. դարու կիսում, ուրեմն եւ ոչ մի կերպ չէր կարող աւանդել Դ. դարու ապրող Լուսաւորչի եղբայր Սուրէնի, Զուանշիր Հեփթաղի, Յակոբի քոյր Անկղնէի եւ նորա որդու մասին։ — Բարդայ անլուր անունը՝ ըստ իս՝ նպատակով է գործածել այստեղ Զենոբ՝ իւր մտացածին պատմութեան ստուգութիւն տալու դիտմամբ։

§ 11. Այս յօդուածն եւս, ինչպէս արդէն եւ նշանակել եմ (տես վերը՝ համեմ.), ծաղկաքաղ է արած Ագաթանգեղից եւ Խորենացու Բ. գրքի 82որդ գլխից, որ կամ ինքը Զենոբ չէ հասկացել, կամ դիտմամբ յեղաշրջել եւ կամ նորա պատմութեան ընդօրինակողներն են շփոթել։ Այստեղ՝ Զենոբի բնագրում ասած է. "իբրեւ տեղեկացաւ (Տրդատ) ի ձեռն սրբոյն Գրիգորի՝ թէ դա է որդին Անակայ...։„ — Եթէ բառացի ընդունենք այս

---

[1] Ուխտանէս, Ա. եր 80։ — Վարդան, եր 54։ — Ագաթանգեղոս, Կ.Պոլիս, 1824, "Թուղթ սիրոյ եւ միաբանութեան„ . . . եր 335։

խօսքերը, ապա պէտք է կարծել, որ Տրդատ՝ Գրիգորի ծագման մասին տեղեկացաւ սորա աներ՝ այսինքն Կեսարացի Դաւթի քրոջից, այն Դաւթի, որի դստեր հետ ամուսնացել էր Գրիգոր։ Մինչդեռ այս լուր յեղաշրջում է Խորենացու հաղորդածի «— ... զՏաճատ ձեռայր նորին (Արտաւազդայ Մանդակունւոյ) իշխան ի վերայ գաւառին Աշոցայ կարգէ (Տրդատ). սա էր (այսինքն Տաճատ Աշոցայ՝ քեռայր Արտաւազդայ), որ յայտնեաց զդայեակներոյն իւրոյ Արտաւազդայ եւ նա արքային, նախ զԳրիգոր Անակայ լինել որդի...։» — Խորենացու «քեռայր նորին» Զենոբի գրուածում ի ձեռոյ աներոյն է փոխած։ — Ս. Էջմիածնի մի ձեռագիրը ունի այսպէս. «իբրեւ տեղեկացաւ (Տրդատ) ի քեռոյ աներոյ իւրոյ (sic!) վասն Գրիգորի, թէ դա է...», — որ ոչ պակաս անհեթեթ է, քան առաջին ընթերցուածը։ Ուխտանէս՝ որ անշուշտ ունէր ձեռքում Զենոբի գործը, այստեղը գնում է[1] համաձայն Խորենացուն։

Յամենայն դէպս պարզ է, որ Զենոբ օգտուել է Խորենացու պատմութենից, միեւնոյն ժամանակ մոլորաբար գուցէ անգիտակցօրէն կրկնելով Ագաթանգեղի (էջ 102) «դա է որդի Անակայ մահապարտի, որ սպան զհայր ձեր Խոսրով», — մի դարձուած, որ խօսակցութիւն՝ դիալօգ լինելով երկու անձանց մէջ, բոլորովին անտեղի է Զենոբի պատմողական նկարագրի մէջ։

§ 12. — Այս 4 տողից բաղկացած յօդուածը անյայտ աղբիւրից քաղած եմ համարում ես։ Ինձ թւում է, որ սորա սկիզբը եւ վերջը՝ այն է. «Այս առաջին պահք եղան յաւուրս Ս. Գրիգորի զոր եւ Առաջաւորը կոչեմք» — աւելի հնագոյն է եւ հաւանականօրէն՝ ազգային եկեղեցական աւանդութիւններից առած. իսկ միջանկեալը — «զոր

---

[1] Ուխտանէս, Ա. էջ 84։

ի Հռոմ Սեղբեստրոս հաւանեցաւ, եւ պահեաց զինքն եւ Կոստանդիանոս թագաւորն, եւ ամենայն քաղաքն Եգիպտոսի» — յետ ժամանակի՝ անվաւեր յաւելուած համարելու է։ Դեռ Աստղիկ[1] ունի միայն առաջին մասը. իսկ ամբողջը՝ Ուխտանէս,[2] որ բառացի կրկնում է Զենոբին։

§ 13 եւ 15։ Այս յօդուածները համառօտութիւնն են Ագաթանգեղի ընդարձակ պատմածին, ինչպէս ցոյց է տուած վերը, եւ այնպիսի ոճով, որպէս զի փոխառութիւնը ուղղակի չընկատուի։ Նոյն նպատակով՝ թւում է ինձ, ընդհատած են այս յօդուածները եւ ընդարձակ միջանկեալ զրոյց ներմուծած, ինչպէս որ է § 14ը։

§ 14. — Հետաքրքրական եւ բնորոշ է այս յօդուածը։ Զենոբ, կամ ով որ է Տարօնոյ Պատմութեան հեղինակը՝ կարդալով Ագաթանգեղի գրուածում Լուսաւորչի՝ կեսարիայից Յովհաննու կարապետի եւ Աթանագինէի նշխարները բերելու մասին եւ այդ տեղեկութիւնը ամբողջապէս իւր պատմութեան մէջ մտցնելով (§ 13), — հետաքրքրւում է իմանալ, ինչպէս Ս. կարապետի նշխարքը կեսարիա բերուեց եւ որի՞ ձեռքով։ Եւ ահա սկսում է նա զրոյցներ պատմել, թէ ինչպէս Յովհաննէս Աւետարանիչը Պատմոս կղզուց վերադառնալիս՝ անցնում է Եփեսոսից Երուսաղէմ եւ այնտեղ՝ բանալով Յովհաննու կարապետի գերեզմանը, հանում է նորա մարմինը եւ իւր աշակերտ Պողիկարպոս եպիսկոպոսի ձեռամբ ուղարկում է Եփեսոս։ Մի ժամանակից յետոյ նոյն քաղաքի եպիսկոպոս՝ Ա կ գ ե ն ո ս ի (°) աշակերտ՝ Փ ա ր մ ե լ ո ս, ազատուելով Դեկոս թագաւորի հալածանքից, բերեց Ս. Կարապետի մարմինը կեսարիա, եւ ինքը մնաց այնտեղ մինչեւ Դիոկղետիանոսի օրերը։

---

[1] Աստղիկ, էջ 61։
[2] Ուխտանէս, Ա. էջ 94։

անուն Յակոբ՝ փոխանակ¹ Զգօն Պարսիկ կոչէր»։ Նոյն հրաշքները աւելի համառօտ կրկնում է եւ Խորենացին (Գ. 7)։ Բայց երկուսն եւս ոչ մի ակնարկութիւն չեն անում Լուսաւորչի հետ ունեցած նորա ազգակցութեան մասին, որ անշուշտ չէր կարող անյայտ մնալ նոցա, եթէ այդպիսի բան արդարեւ եղած լինէր։ Նոյնը ասելու է եւ Ասողիկի մասին, որ ծաղկաքաղ է անում Խորենացուց եւ քայլ առ քայլ հետեւում նորան. իսկ Յովհաննէս Կաթուղիկոս եւ Թովմա Արծրունի Յակոբ Մծբնացու անունն անգամ չեն յիշում։

Նոյն իսկ «Զգօն» գրքի հայերէն թարգմանութեան² սկզբում անվաւեր թղթի («Ս. Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին առ Ս. Յակոբ եպիսկոպոս Մծբին քաղաքի») յիշատակարանից, որպէս եւ «վասն հաւատոյ» ճառի Լուսաւորչին ընծայած խորագրից (որ նոյնպէս պակասելով Ասորի բնագրում՝ յետ ժամանակի յաւելուած լինելու է.³) — չէ երեւում, որ այդ երկու անձանց մէջ որ եւ է ազգակցութիւն կար։ Դարձեալ՝ Յակոբի վարքերից (գուցէ հնագոյն) կան այնպիսիք, ուր բնաւ չէ յիշվում ոչ նորա ծագումը եւ ոչ որեւէ ազգակցութիւն Լուսաւորչի հետ⁴։ Ազգակցու-

¹ Այսպէս եմ սրբագրում ես բնագրի (Գպ. Գ. գլ. 10) «Յակոբ փոխանակ ազգաւն Պարսիկ կոչէր», մասամբ միայն ընդունելով Գր. [illegible] (Փաւստոս Բուզանդ, 1890, եջ 30) առաջարկած սրամիտ սրբագրութիւնը («Յակոբ որդի էր Անանեայ Զգաւն Պարսիկ կոչէր»)։ Համեմ. Գեննադիոսի Jacobus cognomento Sapiens Nisibenae nobilis Persarum modo civitatis episcopus (Հ. Գ. Զարբհանալեանի Մատենադարան Հայկ. Թարգմ. եջ 24)։

² Գիրք, որ կոչի Զգօն, Կ. Պոլիս, 1824։

³ Մատենադարան Հայկ. Թարգմ. եջ 31—33։

⁴ Այդ տեսակին է պատկանում նորերս Ս. Էջմիածնի Մատենադարանից մեր ստացած գրչագիրներից մէկը, որ յաւելուած է ԺԲ—ԺԳ. դարու Զգօնի ճառերի սկզբին — իր գրութեամբ ըստ երեւութին ժամանակակից ճառերին (բոլորգիր, —— գրչութիւն) եւ բովանդակութեամբ բաւական տարբեր «Սոփերքի» (ԻԲ.) եւ Կ.Պոլսում հրատարակած Զգօնի «Վարքից»։ Օգտվում եմ դէպքից իմ շնոր-

թեան գաղափարը առաջանալուն գուցէ առիթ տուած լինի՝ Զգօնի Ճառերի Հայերէն Թարգմանութենից բաւական յետոյ եւ յամենայն դէպս Ն. գարուց զկնի — Լուսաւորչի Նամակում գործածած “եղծայր„[1] բառը, որից՝ ըստ իս, առաջինը օգտուած պէտք է լինի եւ այն՝ դեռ բաւական շափաւոր. Յակոբի մի հին վարքագիր՝ աւանդելով.[2] “Եւ ոմանք (*) Հակառակին յառաջին բանս, ոչ ասելով զնա յազգէն Արշակունեաց, կամ Հօրաքեռորդի Ս. Գրիգորի, զոր մեք սերտ գտեալ եւ հաւանեալ ի գրոց Ասորւոց . . . „: Այնուհետեւ պատմում է նա համառօտ՝ թէ երբ որ Գրիգորի դայեակները փախցրին նորան Կեսարիա, նորա “համացեղ„ Յակոբին եւս իւր դայեակը տարաւ Կապպադովկիա, ուր եւ “անեալ եւ լցեալ աստուածային իմաստիւք եւ ազգմամբ Ս. Հոգւոյն յուղի անկեալ գայր հասանէր յերկիրն Ասորւոց, մերձ ի քաղաքն Մծբին . . . „: — Այսքան: Անանուն վարքագիրը դեռ չէ յիշում ոչ Յակոբի հօր, մօր ու քրոջ անունները եւ ոչ նոցա կեանքին վերաբերեալ պարագաները: — Յակոբի միւս վարքագիրը (ըստ ժամանակին աւելի յետին), որ մեծ տարբերութիւններ ունի հնից, ի միջի այլոց առաջ է բերում արդէն Մծբնացու բոլոր ազգականների անունները՝ մանրամասնութիւններով հանդերձ, թէեւ յայտնի չէ՝ ո՞ր տեղից: “Ս. Յակոբ Մծբնայ հայրապետն էր ազգաւ Պարթեւ եւ ազգական Ս. Լուսաւորչին մերոյ, զի էր որդի Խոսրոխաձեայ՝ քեռն Անակայ որ էր հայր Լուսաւորչի մերոյ: Այս Ա-

Հակալութիւնս յայտնել Գեր. Սրբազան Արիստակէս եպս. Սեդրակեանին, որ ըստ իմ խնդրանաց, հաճել էր ուղարկել ինձ յիշեալ ձեռագրի պատճէնը:

[1] “. . . Յայսմ ամենայնի ե ղ ծ ա յ ր ես այնպէս հաւատացեալ եմ, աղաչեմ զքեզ, զի գրեսցես եւ խելամուտ արասցես զիս, թէ ո՞րպիսի գործ պիտոյ է այսմ հաւատոյ մերոյ եւ հանգուսցես զիս:„ (Լուսաւորչի Նամակի վերջը. տես Զգօն, եր 4—5:)

[2] Սոփերք Հայկականք. ԻԲ. եր 5—7:

նաև յորժամ փախստական եղեւ տամբ իւրով յերեսաց արքային Խոսրովու՝ հօրն Տրդատայ, յայնժամ որպէս զմանուկն Գրիգոր փախստեայ բերին ի Կեսարիա, նոյնպէս ընդ նմին եւ (զ)Յակոբ բերին անդ, ուր սնաւ եւ ուսաւ զհաւատս քրիստոնէութեան։ Էր եւ այլ մանուկ մի Սուրէն անուն եղբայր Լուսաւորչին. սա տարեալ եղեւ ի Պարսկաստան եւ սնաւ ի ձեռն Խոսրովուհեայ մօրն Յակոբայ։ Եւ Յակոբ ունէր առ իւր ի Կեսարիա դքոյր մի Սոփքէն անուն, որ յետ ածման հասակի ստիպեաց զՅակոբ տանել զինքն ի Պարս. վասն որոյ եւ Յակոբ առեալ զքոյր իւր եւ տարեալ ի Պարս, ուրանոր ամուսնացաւ Սակդէն, եւ Յակոբ . . . ըստ երկնային շնորհաց՝ ոչ կամեցաւ կալ ի Պարսկաստան առ մերձաւոր արքունիս, այլ թողեալ զամենայն ազգականս իւր, ել եւ գնաց ի կողմանս Ասորւոց . . . մերձ ի քաղաքն Մծբին[1] . . . ։»

Իսկ Զենոբ՝ կրկնելով վերջին վարքագրի աւանդած Յակոբի ազգականների անունները, նոր պարագաներ եւս աւելացնում է սոյա մասին, որ բնաւ անծանօթ են յիշեալ վարքագիրներին. այն է՝ Լուսաւորչի եղբայր Սուրէնի [illegible]. — Լուսաւորչի հօրաքոյր եւ Յակոբի մայր Խոսրովուհու ամուսին [illegible] անունը [illegible] եւ իսկոյն կրկին անգամ նոյն Խոսրովուհու ամուսին [illegible] անուն յիշելը եւ նորա մահը, որին պատանել էր պատկերագրում [illegible]. — Յակոբի քոյր Ասկդնէն, նորա ամուսնանալը, նորա որդին, որ [illegible], «զոր յետոյ Տրդատ ըմբռնեաց, ասում է Զենոբ, մինչ առ արքայն Յունաց էր . . . ։»[2] — Զենոբ մինչեւ անգամ ցոյց է տալիս այն աղբիւրը, որից քաղել է ինքը այս տեղեկութիւնները. . . .

[1] Զենոբ, էջ 407։
[2] Տես վերը, էջ 8. 10։

“ընթերցի՛ր զԹագաւորութիւն Հեփթաղենիկայ հելլենացի գրով եւ կամ զԹագաւորութեանն Ճենաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի, առ Բուզդ պատմագրի։„[1]

Քննենք մի առ մի այս յաւելուած պարագաները՝ սկսելով Լուսաւորչի եղբայր Սուրէնից։

Ագաթանգեղոս՝ պատմելով Անակայ ցեղի կոտորման մասին, ասում է[2] թէ “միայն երկուս մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթեւին պրծուցեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրուք՝ զմին ի կողմանս Պարսից եւ զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին„, առանց յիշելու նոցա անունները։ Յաջորդ էջերից երեւում է, որ Յունաց կողմերը փախցրած մանուկը՝ այնտեղ կրթուելով քրիստոնէական ոգով, Գրիգոր է կոչուել. բայց թէ ի՞նչպէս էր Պարսկաստան փախցրած մանուկի անունը եւ ինչ եղաւ նորա վիճակը, ոչինչ չէ ասում պատմագիրը։

Սորանից ոչ աւելի աւանդում է եւ Խորենացին, թէեւ սա իւր ձեռքին ունէր Արտիթէսի Թուղթը Լուսաւորչի վարուց մասին[3]։

Միայն Սեբէոսն է, որ հաղորդում է, թէ Խոսրովի կոտորածից ազատուած մահապարտ Անակի մի զաւակին փախցրին դայեակները Պարսից դուռը. “եւ կատարեաց արքայն (Արտաշիր) ի վերայ նորա զպարգեւս խոստացեալս հօրն նորա Անակայ զթուն իսկ զՊարթեւական զՊալհաւն անդրէն դարձուցեալ Նոտ կոչեալ մեծարեաց[4]„։ Բայց թէ ի՞նչ էր այդ մանկան անունը՝ Սեբէոս նոյնպէս լռում է։

Ո՞րտեղից ուրեմն եւ ի՞նչպէս յայտնուեցաւ Գրիգորի եղբայր Սուրէնի անունը։

---

[1] Անդ։
[2] Ագաթանգեղ, էջ 41։
[3] Խորենացւոյ Պատմ. Հայոց, Բ. 80։
[4] Սեբէոս, էջ 36։

Ինձ թվում է, թէ սորա ծագման սկզբնական շարժառիթը պէտք է տուած լինի Լուսաւորչի ցեղի "Սուրէնէ-Պահլաւ" կոչումը, որ Ե. դարուց շատ յետոյ ապրող հայ գրագէտներից ոմանք նախ իրեն՝ Լուսաւորչին եւ ապա նորա եղբօրն են վերագրել:

Զենոբի մի քանի ձեռագիր (երկուսը՝ Ս. Էջմիածնի եւ մէկը՝ Ս. Ղազարու) տպագրի "իսկ զմիւս եղբայր նորա (Գրիգորի), որ կոչէր Սուրէն անուն" խօսքերին անմիջապէս աւելացնում են՝ յայտնի չէ, ինչ տեղից առնելով — "իբրեւ պատուան իւրոյ" եւ կամ "որոյ զգապատուանն էին եղեալ Սուրէն"... որից երեւում է Սուրէն անուան առնչութիւնը Պահլաւ ցեղի Սուրէն կոչման հետ: Աւելի արժանի է ուշադրութեան Զենոբի մի այլ ձեռագրի հետաքրքրական ընթերցուածը[1] (ըստ իս՝ քան նախընթաց յաւելուածները հնագոյն) վերաբերեալ Գրիգորի հեթանոսական անուանակոչութեան. "Եւ մկրտեալ Գրիգոր, զոր մայր եւ հայր նորա Անակշատ[2] Սուրէն կոչէին:" Այստեղ եւս կրկնվում է տոհմային Սուրէն կոչումը, բայց վերաբերութեամբ Գրիգորին եւ ոչ թէ իւր եղբօրը, որին եւ վերագրել են այդ կոչումը յետին ընդօրինակողները՝ ձգտելով մի կերպ որոշել Անակի միւս որդու անյայտ մնացած անունը:

Իսկ Սուրէնի Ճենաց (որ՝ ինչպէս վերը յիշեցինք, մի քանի ձեռագիր "Ճահէն" ունին եւ այլք՝ "Ճենաց եւ Պարգանդայ") երկիր գնալը եւ այնտեղ թագաւորելը, մասամբ միայն անհաւատալի պէտք է համարել: Արդէն Ագաթանգեղի աւանդածը՝ մանուկներից մէկի Պարսկաստան փախցնելու եւ Արտաշրի խոստման մասին եւ մանաւանդ

---

[1] Տես "Ագաթանգեղ եւ իւր բազմադարեան գաղտնիքը." Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկ, 1890, էջ 37:

[2] Պահլաւերէն Անոյշ-շատ Անակի ուրախութիւն է նշանակում:

Սեբէոսի բացարձակ վկայութիւնը «Ոսկէ կոչեալ մեծարեացն» (Արտաշիր), — տեղիք են տուել թագաւոր ճանաչելու Սուրէնին: Բայց թէ ինչու՞ Ճենաց թագաւոր, երբ որ Պարսից արքայի խոստման համաձայն «Պալհաւի» տէրը պէտք է նա լինէր, եւ ի՞նչ տեղից է յայտնի, որ նա 19 տարի թագաւորեց Ճենաստանում, այս մնում է անստուգելի:

Մնացեալ անձերն եւս հազիւ ստոյգ լինին:

Ո՞վ է Անակի քոյր Խոսրոխուհին. արդեօք Լուսաւորչի հետ Ցակորի ազգակցութիւնը պնդելու նպատակով չէ՞ հնարած այդ անձնաւորութիւնը, որպէս եւ նորա անունը՝ արդեօք նմանութեամբ Տրդատի քոյր՝ մեծ օրիորդ Խոսրովիդխտի չէ՞ կազմուած: Թէ՛ Ուխտանէսի, թէ՛ Վարդանի եւ թէ Լուսաւորչի Ներբողեաններից[1] տեղեկութիւնները այս մասին յետին են եւ անշուշտ Զենոբի անմիջական ազդեցութեամբ առաջացած:

Ո՞վ է Խոսրովիդխտի ամուսին Ջուանշէր Հեփթաղի Նոֆառորը, որին մի քանի տող յետոյ Հեփթաղենից եւս կոչում է հեղինակը. արդեօք չկա՞յ որեւէ առնչութիւն սորա եւ Սեբէոսի հաղորդածի հետ՝ Պարսից մեծ իշխան Ջուանվեհի[2] եւ Քուշանաց ազգի ու Հեփթաղի արքայի[3] մասին՝ ի նկատի ունելով առհասարակ Զենոբի ծանօթութիւնը Բագրատունեաց եպիսկոպոսի Պատմութեանը, ինչպէս վերը տեսանք արդէն: Ջուանշէր անուան առաջանալուն առանց ազդեցութեան չէ երեւում ինձ նաեւ Կաղանկատուացու[4] պատմածը Աղուանից համանուն արքայի մասին:

Ընդհանրապէս պէտք է դիտել, որ Զենոբ մեծ դիւրութեամբ բաշխում է աջ ու ձախ ար-

---

[1] «Սոփերք Հայկականք» Ե:
[2] Սեբէոս, էջ 72:
[3] Անդ, էջ 67:
[4] Պատմ. Աղուանից Մովսէսի Կաղանկատուացւոյ, Հրտ. Էմին. էջ 136:

քայական տիտղոսներ․ Թագաւոր է Լուսաւորչի եղբայր Ս--րէնը, Թագաւոր է Խոսրովուհու ամուսինը Զ--ան-էր, Թագաւոր է դարձեալ Յակոբի հայրը Տէր-ն, Թագաւոր է նորա սպանիչ Լփնայ Ռ-ֆ-է-, Թագաւոր է վերջապէս Յակոբի Անկղնէ Փ-ո-Ջ -ր-է-ն (ըստ յետնոց՝ Հրաչէ կամ Հրչէ)։

Ո՞վ է Տէր-ն Թագաւորը, որ Խոսրովուհու ամուսինն է կոչվում, թէեւ մի քանի տող առաջ նոյն հեղինակի վկայութեամբ Զ--ան-էրն էր նորա ամուսինը։ Զենոբի ձեռագիր եւ տպագիր բոլոր օրինակների այս միաբերան հաստատած անպատշաճութիւնը ձգտում է ուղղել Ուխտանէս[1]։ Լուսաւորչի հօրաքրոյր Խոսրովուհուն ընդունելով ոչ թէ կին Զ--ան-էրէ, այլ "կին որդւոյն Զ--ան-էրէ", որով Խոսրովուհու ամուսինը կամ Յակոբի հայրը Տէր-նն է ճանաչվում։ Ի՞նչ էր սորա ծագումը եւ որտեղ էր նորա Թագաւորութիւնը, անյայտ է մեզ։

Նոյնպէս անծանօթ է Լփնայ Ռ-ֆ-է- Թագաւորը, որի անունը ձեռագիրները տարբեր են հաղորդում. Ռ-ֆ-է-, Ի-ֆ-է-, Այֆ-ն--ֆ-է- (Ուխտանէս՝ չփոթելով երկու խօսքը), Ա-ֆ-է- (Վարդան)։

Յակոբի քոյր Ա-ֆ-Ն-է-ի անունը, որ մի քանի ձեռագիր եւս եւ Ուխտանէս եւ Վարդան՝ ըստ երեւութին չփոթ ընթերցմամբ, Մ-ֆ-էՆ ունին (ԱՍԿԴՆԷ—ՄԱԿԴԻԷՆ), գուցէ Աստուածաշնչի Ա--ՐՆէ (տիկինն) լինի՝ փոքր ինչ աղաւաղեալ ձեւով, որ Զգօնի հայերէն Թարգմանութեան մէջ Վ-ՐՆ-այ՝ բուն սարսկական ձեւովն է պատահում։

Ոչ պակաս անստոյգ է Թվում եւ Անկղնէի որդին, որ գնալով Գ-Թայ (երկու գրչագիր ունին Սակգենայ [2]) երկիրը՝ Թագաւորում է այնտեղ եւ յետոյ իբր Թէ Տրդատի հետ մենամարտում Յու-

---

[1] Ո-խ-փ-Ն-ի-, Ա. էջ 79։
[2] Այսպիսի ընթերցուած ունի նաեւ Ի-մ-Ն-ի հրատարակած Վ-ր-փ-Ն-ի Ուսումնականցի Թանգարանի օրինակը (էջ 54)։

նաց երկրում։ Զենոբի ապագիրները չունին այդ անձին անունը. բայց մի քանի ձեռագիր Հրաչէ են կոչում նորան, որից ըստ երեւութին եւ առել են են Ուխտանէս¹ Վարդան եւ Դաշանց թուղթը։

Արդարեւ՝ Զենոբ ի հաստատութիւն իւր պատմածին յիշում է այն աղբիւրը, որից նա քաղել է իւր տեղեկութիւնները 9-րդ § ի մասին. բայց որչափ հաւաստի է այդ աղբիւրը։ Բարդա պատմագիրը, որի գրուածը՝ հեղինակի ասելով, պահվում էր Ուռհա քաղաքի դիւանում, պատահում է ձեռագիրներում Բարդեան եւ Բարդէճան ձեւերով, որին Ուխտանէս Բարդընծան Ուռհայեցի է կոչում։ Բարդայ կամ Բարդեան անունով Ուռհայեցի պատմագիր անծանօթ է. իսկ Բարդէճան կամ Բարդընծանը՝ եթէ համանուն հռչակաւոր գնոստիկոսը ընդունինք, որ ունէր արդարեւ գրուածներ՝ թէեւ ոչ ճենաց մասին յատկապէս, ապա վերջինս ծաղկում էր Բ. դարու կիսում, ուրեմն եւ ոչ մի կերպ չէր կարող աւանդել Դ. դարու ապրող Լուսաւորչի եղբայր Սուրէնի, Զուանշիր Հեփթաղի, Յակոբի քոյր Անկղնէի եւ նորա որդու մասին։ — Բարդայ անլուր անունը՝ ըստ իս՝ նպատակով է գործածել այստեղ Զենոբ՝ իւր մտացածին պատմութեան ստուգութիւն տալու դիտմամբ։

§ 11. Այս յօդուածն եւս, ինչպէս արդէն ես նշանակել եմ (տես վերը՝ համեմ.), ծաղկաքաղ է արած Ագաթանգեղից եւ Խորենացու Բ. գրքի 82-րդ գլխից, որ կամ ինքը Զենոբ չէ հասկացել, կամ դիտմամբ յեղաշրջել եւ կամ նորա պատմութեան ընդօրինակողներն են չփոթել։ Այստեղ՝ Զենոբի բնագրում ասած է. "Իբրեւ տեղեկացաւ (Տրդատ) ի ձեռոյ անէրոյն Գրիգորէ՝ թէ դա է որդին Անակայ...։" — Եթէ բառացի ընդունենք այս

¹ Ուխտանէս, Ա. էջ 80։ — Վարդան, էջ 54։ — Ագաթանգեղոս, Կ.Պոլիս, 1824, "Թուղթ սիրոյ եւ միաբանութեան". . . էջ 335։

խօսքերը, ապա պէտք է կարծել, որ Տրդատ՝ Գրիգորի ծագման մասին տեղեկացաւ սորա աներ՝ այսինքն Կեսարացի Գուէթի քրոջից, այն Գուէթի, որի դստեր հետ ամուսնացել էր Գրիգոր։ Մինչդեռ այս լոկ վերաշրջումն է Խորենացու հաղորդածի "— ... զՏաճատ փեսայն Նորին (Արտաւազդայ Մանդակունւոյ) իշխան ի վերայ գաւառին Աշոցայ կարգէ (Տրդատ). սա էր (այսինքն Տաճատ Աշոցայ՝ քեռայր Արտաւազդայ), որ յայտյայն զգացոյց աներոյն իւրոյ Արտաւազդայ եւ նա արքայի, նախ զԳրիգոր Անակայ լինել որդի...։" — Խորենացու "քեռայր նորին" Զենոբի գրուածում է փեսայ աներոյն է փոխած։ — Ս. Էջմիածնի մի ձեռագիրը ունի այստեղ. "իբրեւ տեղեկացաւ (Տրդատ) ի քեռոյ աներոյ իւրոյ (sic!) վասն Գրիգորի, թէ դա է...", — որ ոչ պակաս անհեթեթ է, քան առաջին ընթերցուածը։ Ուխտանէս՝ որ անշուշտ ունէր ձեռքում Զենոբի գործը, այստեղը դնում է[1] համաձայն Խորենացուն։

Յամենայն դէպս պարզ է, որ Զենոբ օգտուել է Խորենացու պատմութենից, միեւնոյն ժամանակ մուրացաբար գուցէ անդիտակցօրէն կրկնելով Ագաթանգեղի (էջ 102) "դա է որդի Անակայ մահապարտի, որ սպան զհայր քո Խոսրով", — մի դարձուած, որ խօսակցութիւն՝ դիալօգ լինելով երկու անձանց մէջ, բոլորովին անտեղի է Զենոբի պատմողական նկարագրի մէջ։

§12. — Այս 4 տողից բաղկացած յօդուածը անյայտ աղբիւրից քաղած եմ համարում ես։ Ինձ թւում է, որ սորա սկիզբը եւ վերջը՝ այն է. "Այս առաջին պահք եղան յաւուրս Ս. Գրիգորի զոր եւ Առաջաւորք կոչեմք", — աւելի հնագոյն է եւ հաւանականօրէն՝ ազգային եկեղեցական աւանդութիւններից առած. իսկ միջանկեալը — "զոր

---

[1] Ուխտանէս, Ա. էջ 84։

ի Հռոմ Սեղբեստրոս հաւանեցաւ, եւ պահեաց ինքն եւ Կոստանդիանոս թագաւորն, եւ ամենայն քաղաքն Եգիպտոսի,, — յետ ժամանակի՝ անվաւեր յաւելուած համարելու է։ Դեռ Աստղիկ[1] ունի միայն առաջին մասը. իսկ ամբողջը՝ Ուխտանէս,[2] որ բառացի կրկնում է Զենոբին։

§ 13 եւ 15։ Այս յօդուածները համառօտութիւնն են Ագաթանգեղի ընդարձակ պատմածին, ինչպէս ցոյց է տուած վերը, եւ այնպիսի ոճով, որպէս զի փոխառութիւնը ուղղակի չընկատուի։ Նոյն նպատակով՝ թւում է ինձ, ընդհատած են այս յօդուածները եւ ընդարձակ միջանկեալ զրոյց ներմուծած, ինչպէս որ է § 14ը։

§ 14. — Հետաքրքրական եւ բնորոշ է այս յօդուածը։ Զենոբ, կամ ով որ է Տարօնոյ Պատմութեան հեղինակը՝ կարդալով Ագաթանգեղի գրուածում Լուսաւորչի՝ Կեսարիայից Յովհաննու կարապետի եւ Աթանագինէի նշխարները բերելու մասին եւ այդ տեղեկութիւնը ամբողջապէս իւր պատմութեան մէջ մոցնելով (§ 13), — հետաքրքրւում է իմանալ, ի՞նչպէս Ս. Կարապետի նշխարքը Կեսարիա բերուեց եւ որի՞ ձեռքով։ Եւ ահա սկսում է նա զրոյցներ պատմել, թէ ինչպէս Յովհաննէս Աւետարանիչը Պատմոս կղզուց վերադառնալիս՝ անցնում է Եփեսոսից Երուսաղէմ եւ այնտեղ՝ բանալով Յովհաննու կարապետի գերեզմանը, հանում է նորա մարմինը եւ իւր աշակերտ Պօղիկարպոս եպիսկոպոսի ձեռամբ ուղարկում է Եփեսոս։ Մի ժամանակից յետոյ նոյն քաղաքի եպիսկոպոս՝ Ա կ դ ե ն ո ս ի (°) աշակերտ՝ Փ ա ր մ ե լ ո ս, աղատուելով Դեկոս թագաւորի հալածանքից, բերեց Ս. Կարապետի մարմինը Կեսարիա, եւ ինքը մնաց այնտեղ մինչեւ Դիոկղետիանոսի օրերը։

[1] Աստղիկ, էջ 61։
[2] Ուխտանէս, Ա. էջ 94։

Յովհաննու Աւետարանչի մասին այս աւանդութիւնը միանգամայն անծանօթ է ոչ միայն մեր հնագոյն պատմիչներին, այլ և ընդհանրապէս եկեղեցական մատենագիրներին։[1] Գորան գիտէ միայն Յայսմաւուրքը,[2] որ ըստ երևութին Զենոբից պէտք է առած լինի։

Բայց հեղինակը՝ այս անհաւատալի աւանդութիւնը վերստուգելը աւելի դժուարացնելու դիտմամբ խճողել է նորան բազմաթիւ յատուկ անուններով (սովորական եղանակ Զենոբի), քաղելով դոցա մի մասը — խառն ու շփոթ կերպով — Խորենացու Բ. Գրքի 75որդ գլխից, որ ամենևին վերաբերութիւն չունի այս նիւթին։ Պատմահայրը յիշում է այստեղ Որոգինէսի աշակերտ Փերմելիանոսին, որ եպիսկոպոս էր Կեսարու և հեղինակ մի քանի պատմական գրուածների, դոցա թւում և Եկեղեցու հալածանքի մասին՝ Մաքսիմիանոսի, Դեկոսի և Դիոկղետիանոսի օրով։ — Փերմելիանոս անունը Զենոբի գրուածում Փորփիւրի է փոխած, որ ձեռագիրներում պատահում է նաև Պորփիւրեան[3] ձևով. Վարդանի մի գրչագիրը դորա փոխարէն ունի Փերոզիանոս.[4] Իսկ Ս. Էջմիածնի Զենոբի երկու գրչագիրը՝ «Փերմելիոս աշակերտ Որոգինեսի», որ յետոյ սրբագրած պէտք է լինի համաձայն Խորենացուն — փոխանակ անլուր Աֆրիկոս անուան։

Իսկ նոյն 14որդ յօդուածում Ս. Կարապետի

---

[1] Այս համառօտում Ս. Էջմիածնի Զենոբի երկու ձեռագիր՝ ունին «... և ես (Յովհաննէս Աւետարանիչ) ըզՊօղիկարպոս՝ Զմառնայ հայրապետն», — որ արդարև եպիսկոպոս էր Զմիւռնիոյ, ուր և նահատակուեց՝ ինչպէս վկայում է Եւսեբիոս (Եկեղ. Պատմ. Հայ թարգ. Դպր. Դ. գլ. 15), բոլորովին սակայն չը յիշելով Ս. Նահատակի մասնակցութիւնը Յովհաննու Կարապետի մարմնի Եփեսոս կամ այլուր փոխադրելու մասին։

[2] Հ. Մ. Չամչեան Պատմ. Հայոց. Ա, եջ 626։

ԾԱՆ. ՀԵՂ.

[3] Անդ։

[4] Վարդանայ Բարձրբերդեցւոյ Պատմութիւն տիեզերական. Հրտ. Մ. Էմին. Մոսկուա, 1861, եջ 56։

նշխարքը Հայ նախարարների ձեռքով՝ սպառնալիքով եւ բռնութեամբ ստանալը կեսարու Ղեւոնդ Հայրապետից, — կամ յետ ժամանակի ժողովրդական աւանդութիւն համարելու է եւ կամ հնարած զրոյց. յամենայն դէպս դա կրկնութիւն է § 13ի վերջում յիշածին՝ զարդարուած նորանոր անստոյգ պարագաներով, որոց թւումն են նաեւ Ղեւոնդի կողմից Լուսաւորչին տուած ինչ որ "[illegible] [illegible] [illegible], զոր էր տուեալ նմա (Ղեւոնդի) Հռոմայ Հայրապետն:" — Նոյն "լուսաւոր ականց" մասին յիշում է եւ Վարդան (էջ 57), թէեւ յայտնի չէ, ինչ ակունք էին դոքա: Զենոբ ուրիշ տեղ (էջ 38) "ակն լուսոյ" է կոչում դոցա եւ բացատրում "անուն լուգրոն," որ թարգմանիչները amethyste են թարգմանում:

§ 16. Անյայտ աղբիւրից քաղած այս հատուածը, ինչպէս սովոր է անել Զենոբ, կուտակել է անծանօթ յատուկ անուններով, որոնց դժուար է ստուգել: Ո՞վ էր այս Դ[illegible] (երկու գրչագիր՝ Դիմաւրիոս ունին) Աղեքսանդրիայից, Ե[illegible]՝ Ասորիքից, Ս[illegible]՝ Եփեսոսից: Ագաթանգեղ աւանդում է, որ "ի Սեբաստիա գտանէր բազմութիւն եղբարց, զորս հաւանեցուցանէր (Գրիգոր) ընդ իւր գալ, զի վիճակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին" (էջ 605), որ եւ կրկնում է Զենոբ բառացի: Այստեղ ոչ կրօնաւորների անուններ կան եւ ոչ Աղեքսանդրիա կամ Ասորիք, որոց խնդրոյն մէջ է բերում Զենոբ: — Եղիազարի մասին դեռ կը խօսենք. անցնենք այժմ Զենոբի պատմութեան գլխաւոր հատուածին՝ այն է — Գիսանէ եւ Դեմետրէ կուռքերին եւ նոցա առթիւ տուած պատերազմներին (էջ 25—35):

§§ 17—20. Ագաթանգեղ պատմում է, որ Տրդատի, Հայ արքունեաց, նախարարների եւ բազմաթիւ ժողովրդի մկրտելուց յետոյ՝ Լուսաւորիչ առաջարկեց "վասն խաղաղութեան հասարակաց

քակել, կործանել (զհեթանոսական մեհեանսն), բառնալ զգայթագղութիւնսն ի միջոյ եւ ի բաց կորուսանել...„ (էջ 583)։ — Ապա ինքը թագաւորը զօրքով գնում է Աշտիշատ՝ այնտեղի Անահտական բագինը կործանելու եւ ճանապարհին հանդիպելով Երիզայի՝ նախ քանդում է Տիւր դից մեհեանը եւ ապա Արտաշատու Անահտականը։ Այնուհետեւ Տրդատ եւ Գրիգոր շրջում են Բարձր Հայոց կողմերը՝ նոյն նպատակով. Դարանաղեաց Թորդան գիւղում քանդում են Բարշիմնիա սպիտակափառ դից մեհեանը, Անի ամրոցում՝ Արամազդինը, Եկեղեաց գաւառի Երէզն աւանում "ի մեծ եւ ի բուն մեհենեացն Հայոց թագաւորաց„ — Անահտինը, Թիլ աւանում՝ Նանէականը, Դերջան գաւառի Բագայառիճ աւանում՝ Արամազդինը, ջարդում, փշրում են աստուածների պատկերները եւ տիրելով դարերով ժողոված մեհեանների գանձերին՝ աղքատներին են բաշխում նոցա. իսկ հողային կալուածները նուիրում եկեղեցւոյն սպասաւորութեան։ Եւ այս նոքա կառուցում են տեղ տեղ, ի հարկ է, ոչ առանց քրմերի եւ հեթանոս ժողովրդի բուռն ընդդիմադրութեան, որոնց այլաբանօրէն "թեւաւոր դեւերի„ է նմանեցնում երկիւղած պատմիչը։[1]

Յետ այնորիկ, երբ որ Լուսաւորիչ ուղարկուեց նախարարների ուղեկցութեամբ Կեսարիա՝ Ղեւոնդիոս արքեպիսկոպոսից ձեռնադրութիւն ստանալու, իւր վերադարձին "եկն եհաս ի սահմանս Հայոց, լուաւ՝ թէ Վահէվահեան մեհեան մնացեալ է յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծադանձ, լի ոսկով եւ արծաթով, եւ բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալ վիշապաքաղն Վահագնի. յաշտից տեղիք թագաւորացն Հայոց մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ ի վերայ գետոյն

[1] Ագաթանգեղ. էջ 583—593։

Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառն Տաւրոսի, որ եւ անուանեալ ըստ յաճախապաշտաման տեղեացն Յաշտիշատ. զի յայնժամ եւս դեռ չէին կային երեք բագինքն ի նմա: Առաջին մեհեանն Վահէվահեան, երկրորդ Ոսկեմօր Ոսկեծին դից եւ բագինն իսկ յայս անուանեալ՝ Ոսկեհատ Ոսկիամօր դիցն. եւ երրորդ մեհեանն անուանեալ Աստղկան դից, Սենեակ Վահագնի կարդացեալ ըստ յունականին, որ է ինքն Ափրոդիտէս: Արդ դիմեաց գալ Ս. Գրիգորիոս, զի քանդեսցէ եւ զայն. զի տակաւին իսկ ոգէս մարդկան խառնակութեան զոհէին ի յայս բագինս մնացեալս:[1] „

Այնուհետեւ շարունակում է պատմել Ագաթանգեղ թէ Լուսաւորիչ “հրաման ետ զօրականին եւ իշխանացն որ ընդ իւրն էին, զի եկցեն՝ մրճօք տապալեսցեն զշինուածս բագնացն: Որ եկեալ շատ ջանացան եւ ոչ կարացին զդուրս բագնացն գտանել զի ի ներքս մտցեն, զի ծածկեսցին դեւքն ի նոցանէն . . .: Իսկ (Գրիգոր) առնոյր զնշան տէրունական խաչին եւ ել եկաց ի ձորակէն յանդիման բարձրաբերձ տեղւոյն շինուածոյն եւ ասէ. Հրեշտակ քո, Տէր, հալածեսցէ զնոսա: Եւ ընդ բանին հողմ ուժգին բղխեաց ի խաչանիշ փայտէն . . .: Եւ երթայր հողմն լցեալ լերինն հաւասար, եւ շոգաւ հարթեաց, տապալեաց, ընկեց զամենայն շինուածն բագնացն . . .: Եւ կոտորեցան մարդիկ պաշտաման քրմութեան որ ի տեղւոջ անդ էին . . .: Եւ յետ այսորիկ եկանէր նա (Գրիգոր) ի տեղի մեհենիցն, եւ ժողովեալ դարձուցանէր զմարդիկ աշխարհին յաստուածպաշտութիւն: Եւ եդ անդ զհիմունս եկեղեցւոյն . . . յանուն Ս. Երրորդութեան:[2] „

Ես դիտմամբ մէջ բերի այս ընդարձակ հատուածները, որպէս զի ընթերցողը պարզ տեսնի՝

---

[1] Ագաթանգեղ. էջ 606—607:
[2] Ագաթանգեղ. 608—610:

թէ ինչ նիւթ է ունեցել Զենոբ իր ձեռքի տակ եւ ինչպէս է նորան մշակել ու վերպարանափոխել։

Կարեւոր է դիտել, որ Ագաթանգեղի վկայութիւնը Աշտիշատում եղած Վահէվահեան եւ Վահագնի մեհեանի մասին հաստատւում է միւս պատմագիրներից։ — Այսպէս՝ Բիւզանդ՝ երկու անգամ յիշում է Աշտիշատում գտնուած Հերակլեայ եւ Վահագնի մեհեանը եւ մի անգամ «Աթոռ Անահտայ,» որ ըստ երեւութին Ագաթանգեղի «Ոսկեծին, Ոսկիմայր Անահտին» է։[1]

Խորենացին նոյնպէս յիշում է, թէ Տիգրան Միջին «Հրամայեաց յաշտից տեղիս (Աշտիշատ) կանգնել զԱփրոդիտեայ (Աստղկան՝ ըստ Ագաթանգեղայ) պատկերն իբրեւ Երակլեայ տարփաւորի առ նորին պատկերին Երակղեայ . . . ։»[2]

Վերջապէս Անահտի մեհեանի եւ նորա ոսկեձոյլ արձանի մասին աւանդում են տոհմային պատմագիրներից շատ վաղ նաեւ Պլինիոս եւ Պլուտարքոս։[3]

Մինչդեռ բացարձակ հակառակ այս արժանահաւատ տեղեկութիւններին, նաեւ դիտմամբ յանգէտս ձեւանալով այդ մասին — Զենոբ նկարագրելով հռչակաւոր Աշտիշատը՝ բնաւ չէ յիշում ոչ Վահագնին կամ Հերակլէսին, ոչ Անահտին եւ ոչ Աստղկան կամ Ափրոդիտին։ Դորա փոխարէն նա այսպիսի առասպել է պատմում. Աշտիշատում կային կուռքեր, որոց պաշտօնեաները — քուրմերը «սեւք էին եւ գիսաւոր եւ զազրատեսակք, զի ցեղով ի Հնդկաց էին։ Քանզի եւ կռոցն, որ յայս տեղւոջ էին, պատճառն այն է.» — երկու եղբայր՝ Գիսանէ եւ Դեմետր հնդիկ իշխաններ՝ փախչելով իրենց Դինաքէ արքայից, ապաստան են գտնում

---

[1] Բուզանդ. Գ. 14. եւ 37. 38. Ե. 25.
[2] Խորենացի. Պատմ. Բ. 14.
[3] Տես Die persische Anahita, ein Beitrag zur Mythengeschichte des Orients, von Windischmann München, 1856.

Հայաստան՝ մեր Վաղարշակի մօտ։ Սա պարգեւում է նրանց Տարօն գաւառը, ուր նրքա քաղաք են շինում եւ կոչում Վիշապ։ Տասնուհինգ տարի անցնելուց յետոյ Վաղարշակը սպաննել է տալիս (չէ յայտ՝ ինչու) երկու եղբայրներին, եւ իշխանութիւնը յանձնում է նրա երեք որդւոց — Կուառին, Մեղտէին եւ Հոռեանին։ Սոցանից իւրաքանչիւրը նախ իւր անուամբ աւան շինելով (Կուառաւ, Մեղտի, Հոռեանս), — այնուհետեւ "Հովասուն" Քարքէ լերան վերայ ընդհանուր դժերով դաստակերտ են կանգնում, եւ այնտեղ եւս երկու պղնձեայ կուռքեր են հաստատում՝ մէկը յանուն Գիսանեայ եւ միւսը՝ յանուն Դեմետրեայ, ու իրենց ազգին յանձնում նրա պաշտամունքը։ "Գիսանէս, աւելացնում է Զենոբ, զի գիսաւոր էր եւ վասն այնորիկ նորա պաշտօնեայքն գէսք էին թողեալ. զոր հրամայեաց իշխանն (°) կտրել։ Զի ազգն այն յորժամ ի Քրիստոս դարձան, չէին կամարեալ ի հաւատն եւ զհայրենի օրէնսն չիշխէին յայտնի ունել, այլ խաբէութեամբ զայս հնարեցան. ծամ միայն թողուլ ի գլուխ մանկանցն, զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց[1]։"

Սակայն որքան արժանահաւատ է Զենոբի պատմածը։ Նախ՝ Հնդկական գաղթականութեան մասին Վաղարշակի օրով — ոչինչ յայտնի չէ. ոչ ոք այդ մասին ոչինչ չէ յիշում։ Շատ հաւանական է թվում ինձ ենթադրել, որ Զենոբ՝ գիսաւոր քրմերի եւ ծամաւոր մանուկների զրոյցը քաղել է Բուզանդի հաղորդած հետաքրքրական ազգային սովորութի նկարագրից. — "ըստ մանկութեան օրինի, ըստ կրօնից Հայոց, ասում է արժանահաւատ պատմագիրը, օրէն էր զգլուխ մանկտւոյն (գերծել), այնպէս ի ժամանակին (Դ. դարում) գեր-

¹ Զենոբ, էջ 36։

ծեալ էր զգլուխ մանկանն Արտաւազդայ (Մամիկոնայ) եւ ցցուն (ծամ) էր թողեալ եւ գէս արձակեալ։[1]" — Այս ընդհանուր ազգային սովորութիւնը մանաւորել է Զենոբ քրմական դասի վերաբերմամբ, եւ ըստ քմաց բացատրութիւն տուել նորան՝ թերեւս մասամբ հիմն առնելով իրեն "ըստ կրօնից Հայոց" ասացուածը, որ այնու ամենայնիւ ոչինչ հնդկականի հետք կամ ակնարկութիւն չունի։

Երկրորդ՝ Գիսանէ եւ Դեմետր հնդիկ անուններ չեն. ի զուր Աւգալեան, Lassen, Ritter — լաւագոյն հետազօտութեան արժանի ջանքերով — մերձեցնում են դոցա հնդկական Krišnaյի եւ նորա եղբայր Habadarի կամ Baleramի։[2] Առնուազը՝ դոցանից մէկը հայ գէս, գիսան (գիսաւոր) եւ միւսը՝ յոյն Դեմետր բառերի հետ կարող է լծորդութիւն ունենալ։

Երրորդ՝ Գիսանէ եւ Դեմետր թէ իբրեւ անձանց եւ թէ կուռքերի կամ աստուածների անուններ՝ բոլորովին անծանօթ են Հայաստանի միւս գաւառներում, որպէս եւ բոլոր մեր պատմիչներին մինչեւ Ժ. դարը։ Հետաքրքրական է գիտել, որ նոյն իսկ Յովհան Մամիկոնեանը, — որ ոչ անհիմն՝ հեղինակ է ենթադրվում Զենոբի գրուածին, — ահագին քանակութեամբ իւր առաջ բերած յատուկ անունների մէջ բնաւ չէ յիշում Գիսանէին եւ Դեմետրին։

Չորրորդ՝ հեթանոս Հայերի ամենահռչակաւոր եւ սիրելի ազգային սրբատեղում՝ Աշտիշատում, Անահտի, Վահագնի եւ Աստղկան մեհեանում, ինչ գործ ունին Հնդիկները իրենց անլուր աստուածներով։ Հայաստանում այդ միջոցին, որպէս եւ դրանից Կապադովկիայում, Պոնտոսում նաեւ

---

[1] Բուզանդ, Դպ. Ե, գլ. 43։

[2] Տես Ritter's Erdkunde, X. Theil. III. Buch, West-Asien, p. 557։ Նոյնպէս Էմին Очеркъ религіи языч. армянъ, 1864. с. 41.

Վրաստանում, դարերով հաստատուած եւ բոլորովին ազգային դարձած, հայացած էր Իրանական կամ Պարսկական պաշտամունքը, որի գոյութիւնը մինչեւ երկրներում վկայում են միաբերան թէ տոհմային եւ թէ օտար պատմիչները։ Այդ պարզ երեւում է նաեւ հայ Պանթէոնի ներկայացուցիչ Արամազդի, Անահտի, Վահագնի անուններից, որոնք իսկապէս Զանդիկ կամ Աւեստական կրօնքի Ahuramazda, Anahita եւ Veretragna աստուածներն են։

Վերջապէս Զենոբ եւ ոչ մի խօսքով չէ յիշում, թէ ինչ էր այդ կուռքերի պաշտամունքը, ինչով էր նա տարբերվում հեթանոսական միւս հաւատքներից. "պաշտօն պղծութեան„ եւ այլ այսպիսի անորոշ խօսքեր բնաւ գաղափար չեն տալիս Գիսանէ եւ Դեմետր կուռքերի պաշտամունքի մասին։

Թողնում եմ կանգ առնել յատուկ անունների բանագրոս ստուգաբանութեան վերայ. դրքա առնուած են բլուրների, լեռների, աւանների կոչումներից, — մի եղանակ, որ սկիզբն առնելով Պատմահօրից՝ ի չարն գործ դնելու չափ գործ է ածուած Զենոբի[1] որպէս եւ Յովհ. Մամիկոնեանի գրուածքներում։ Նոյնը դիտելու է եւ թուերի[2] զարմանալի որոշ եւ ճիշտ նշանակելու մասին, որոնք իրենց արտակարգ ճշտութեամբ արդէն տեղիք են տալիս կասկածի։

Գալով մնացեալ յօդուածներին, Զենոբի պատմութեան այդ մասը — §§ 17—28, էջ 25—49 — երեք հատուածի կարելի էր վերածել։

Ա. — §§ 17, 18, 19, 20 — քրմերի ընդդիմադրութիւնն է Լուսաւորչին եւ նախարարներին, որ վերջանում է նոցա պարտութեամբ, կուռքերի կործանուելով եւ յաղթութեան Ս. խաչը կանգնելով Լուսաւորչի ձեռքով (էջ 25—35)։ —

[1] Տես էջ 27, 29, 30, 36, 45։
[2] Տես էջ 28, 30, 35, 36, 37, 44, 45, 48—49։

Այս հատուածի վերաբերմամբ արդէն բաւական խօսեցանք վերը՝ Գիսանէի եւ Դեմետրի առթիւ։

Բ. — §§ 21, 22, 23, 24, 25 — Ս. Կարապետի նշխարքը Իննակնեան տեղում դնելն է եւ այնտեղ եկեղեցի եւ վանք շինելը, որ այնքան շահագրգիռ է Զենոբի համար՝ գուցէ նոյն իսկ նորա Պատմութեան լոյս տեսնելու գլխաւոր շարժառիթը լինելով (էջ 35–40)։

Գ. — §§ 26, 27 եւ 28 — պարունակում է՝ ըստ երեւոյթին պատահական, բայց՝ որպէս եւ առաջին հատուածը՝ պատմութեան գլխաւոր առարկայի հետ ներքին կապով միացած — Տրդատի պատերազմների նկարագիրը հիւսիսային թագաւոր՝ Գդրիհոնի հետ՝ Վրաց արքայի պատճառով — Գրիգորի եւ Տրդատի Հռոմից վերադառնալիս (էջ 40—49)։

Ա. եւ Բ. հատուածները կազմել է հեղինակը ընդհանրապէս Ագաթանգեղի ազդեցութեամբ, տեղ տեղ, ինչպէս ցոյց է տուած, կամայ-ակամայ կրկնելով պատմագրի խօսքերը, դարձուածները նաեւ ամբողջ նախադասութիւնները, եւ մեծ մասամբ սորան անծանօթ անձեր եւ անուններ ներմուծելով՝ իւր նպատակը առաջ տանելու դիտմամբ։ Իննակնեան վանքի մասին աւելի մանրամասն կը խօսինք ստորեւ։

Իսկ Գ.-ը ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ անհմուտ արուեստակութեամբ հնարած անհետաքրքիր պարագաներ Հայոց եւ հիւսիսականաց պատերազմների, որոնց վերջը պսակվում է Տրդատի քաջութեամբ ճապանաձիգ Գդրիհոն հսկայի վերայ, — մուրացածոյ նկարագիր Խորենացու Պատմութենից, որ եւ ինքը Պատմահայրը, ըստ կարգին, փոխ է առել Յովսեպոսից, ինչպէս արդէն վերը յիշեցինք։

Առաջին եւ վերջին հատուածը իսկապէս բացատրութեան եւ յաւելուածի տեղ են ծառայում երկրորդ եւ գլխաւոր հատուածին։ Զենոբ,

— որ այնքան հետաքրքրուած է Իննակնեան վանքի շահերով, որին եւ ինքը վանահայր է եղած՝ իւր ատեն, — Լուսաւորչի եւ Տրդատի հանդիսաւոր այցելութեամբ եւ արիւնահեղ պատերազմներով ձգտում է սրբագործել այն տեղերը՝ Ս. Կարապետի Եկեղեցին եւ վանքը ոչ միայն առաջին Հայոց սրբարանը ներկայացնելով, այլ եւ այն վանքին [illegible] մեծամեծ [illegible] [illegible]՝ ապահովել ջանալով (ընդ ամէնը աւելի քան 25 հազար ծուխ կամ երդահամար) իբրեւ նոյն իսկ Լուսաւորչից եւ Տրդատից հաստատուած։

Ահաւասիկ Զենոբի Պատմութեան գլխաւոր շարժառիթը եւ նպատակը, որ՝ պէտք է ասած, անսովոր չէ ոչ միայն մեր, այլ եւ ընդհանուր եկեղեցական միջնադարեան վանքային գրականութեան[2]. այն է՝ վանքապատկան կալուածները որեւէ ձեռնձգութենից ապահովելու եւ կամ՝ ընդհակառակը, նոցա սահմանները աւելի ընդարձակելու դիտմամբ՝ հնագոյն նշանաւոր անձնաւորութիւնների — սուրբերի, թագաւորների — հեղինակութիւններին դիմել եւ նոցա վերագրել վանքերի վաւերաթղթերի հաստատումը։[3] Զենոբի պատմութիւնը մի այսպիսի վաւերաթուղթ է՝ կազմուած ոչ վաղ քան Է. դարում, Ս. Կարապետի վանքի կալուածների տիրապետութիւնը ապահովելու յանուն Լուսաւորչի եւ Տրդատի։ — Նոյն վաւերա-

[1] Այլ 12 աւանագիւղերից միայն 6ում Զենոբ հաշւում է մօտ 10.000 հեծեալ եւ հետեւակ զօրք։ (Զենոբ, եջ 37)։

[2] Տես Wattenbach, Deutschlands Geschichtsquellen im Mittelalter, Berlin, 1893.

[3] Այս տեսակ՝ յետոյ ժամանակի՝ գուցէ նմանութեամբ հների շինած վաւերաթղթերից է, իմ կարծիքով, եւ Հ. Ն. Սարգիսեանի "Տեղագրութիւն ի Փոքր եւ ի Մեծ Հայս" գրքում մէջ բերած "Առաքելոց" կամ "Գլաձորոյ" վանքի յիշատակարանը, որ ուղղակի Լուսաւորչին է վերագրում վանքապատկան յետին ժամանակի սահմանների ամենամանրամասն որոշումները։ (Տես եջ 234—235։)

Ծան. Հեղ.

թուղթը՝ աւանների եւ գաստակերտների միակերպ անուններով եւ ծուխերի ու հեծեալ ու հետեւակ զօրքի ցամաք թուերով ո՛չ հետաքրքրութիւն կարող էր ունենալ եւ ոչ եւս մեծ հաւատ գրաւել ընթերցողների կողմից։ Պէտք էր ուրեմն այդ բուն գործնական, նիւթական նպատակը քօղել կրօնական-պատմական պարագաներով եւ նորան սրբագործել նուիրական անձինքների յիշատակով։ Այս բաւական չէ։ Ագաթանգեղի՝ Հայ Պատմութեան այդ երախայրիքի մէջ չկար վկայութիւն ո՛չ Իննակնեան վանքի գոյութեան մասին եւ ո՛չ Լուսաւորչից հաստատուած նորա կալուածատիրութեան՝ այն չափով, որ չափով որ կամենում էին այդ՝ վանքի յետ ժամանակի (Է-Թ. դարու) միաբանները։ Պէտք էր ուրեմն, որ Զենոբի գրուածը թէ նախորդէր Ագաթանգեղին եւ թէ հետեւաբար կարելւոյն չափ նման լինէր նորա պատմութեան։

Ահա՛ ինչու Զենոբի պատմութիւնը ե՛ւ անվաւեր է ե՛ւ կեղծ։

*Պատճէնք Չորից Թղթոց*

*եւ*

*Պատասխանի Զենոբայ ցուցանել զպատճառ Պատմութեան.*

Ցոյց տալով Զենոբին վերաբերած բուն պատմութեան անհաւատալի եւ նպատակաւոր լինելը, դժուար չէ այժմ ապացուցանել եւ այն չորս թղթերի եւ հեղինակի Առաջաբանի անստուգութիւնը (էջ 1—19)։ — Անցնինք այժմ դոցա հետազօտութեան։

Ա. Թուղթ. (էջ 7—9։) Այս թուղթը գրել է տալիս Զենոբ Լուսաւորչին՝ իբր թէ իւր վիճակի պէտքերի համար երկու կրօնաւոր (Եղիազար եւ Տիմոթէոս) խնդրելու Կեսարու Ղեւոնդիոս հայրապետից. բայց իսկապէս դա նպատակ ունի Իննակնեան

[illegible] (վանքը) եւ նոյն իսկ Լուսաւորչի բերանով ստուգելու եւ վաւերացնելու Գիանէ եւ Գեմեար կուսաքերի զոյգը, որ հեղինակի համար կարեւոր է — Ագաթանգեղեց տարբեր լինելու նկատմամբ։

Բ. Թուղթ. (էջ 9—12)։ Այս՝ Ղեւոնդիոս Հայրապետի Լուսաւորչին գրած պատասխանն է, որ մի քանի տող ընդհանուր խորհրդածութիւններից յետոյ նոյնպէս կենդրոնանում է „[illegible]„ — վանքի, միաբանութեան, վանքային կալուածների վերայ։ Բաց ի դորանից Կեսարու Հայրապետը խնդրում է՝ գրով տեղեկացնել իրեն. „Եթէ զինչ էր պատերազմն ձեր եւ քրմացն (որ յԻննակնեան տեղւոջն), մինչ երթայքն ի մէնջ...։„ Իսկ Լուսաւորչի խնդրած երկու կրօնաւորներին նա չէ ուղարկում՝ նոցա Կեսարիայից բացակայութեան պատճառով։ „Եղիազար, աւելացնում է Ղեւոնդիոսի թուղթը, գնաց ի քաղաքէ իւրմէ փախստական, զի յարեան ի վերայ հերձուածողքն (?) եւ հալածեցին զնա ի կողմանս Հռոմայ. իսկ զՏիմոթէոս լուայ թէ գնաց ի կողմանս Երուսաղէմ [illegible] (sic!)„։

Գ. Թուղթ. (էջ 12—13։) Այն ժամանակ իրեն Գրիգորի, Հայոց թագաւոր Տրդատի եւ չորս գահերէց իշխանների ստորագրութեամբ ուղարկվում է թուղթ Նիւտորացոց եպիսկոպոս Եղիազարին եւ Ագգենացոց եպիսկոպոս Տիմոթէոսին՝ խնդրանօք փութալ գալ Հայոց երկիրը եւ բնակիլ ուր որ կամենան՝ Եկեղեաց թէ Հարք գաւառ։ — Այս թղթումն եւս մոռացուած չէ [illegible]. Լուսաւորիչ ասում է. „Թէպէտ դու իսկ (երեւի՝ Եղիազարին է դիմում) առէիր, եթէ զԻննակնեան տեղին տուր ինձ. եւ անդ դրս եղբայրն (զՋենոբ) իսկ իմ ձեռնադրեալ եպիսկոպոս .... այլ մեզ ոչ է արժան առնուլ ի նմանէ, զի աշխատեալ է առանց այլոց սատարութեան։„

Այս թուղթը երկար ճանապարհորդում

է՝ մինչեւ բուն պատկանելոյն հանիլը։ Թղթատարները գնում են Բռւռհա եւ Կեսարիա. այնտեղից Երուսաղէմ, ուր տեղեկանում են, որ Եղիազար եւ Տիմոթէոս Հռոմ են գնացել։ "Եւ իբրեւ նոքա ի Հռոմ գնացին, Եղիազար ի Միջագետս Ասորոց էր գնացեալ վասն Բոլորմանութեան ԺԲ. մարտիրոսացն (sic!)։ Իսկ Բեկտոր, Անաստաս եւ Գայիոս Եգիպտոսի եպիսկոպոսքն իբրեւ տեսին զթուղթն, յոյժ ուրախ եղեն եւ խնդացին. քանզի նոքա հալածական շրջէին զկնի (°) Եղիազարու։„ — Սոքա փութով նամակ են գրում նոյն խօսքերով Տիմոթէոսին, որ Կորնթոս էր, եւ իրենք գնում են Միջագետք՝ Եղիազարին գտնելու։ Եղիազարին այստեղ չպատահելով՝ վերադառնում են Երուսաղէմ, ուր նոցանից մէկը՝ Գայիոս, տեղւոյն հայրապետի մահուան պատճառով Երուսաղէմի հայրապետ է ընտրվում։ "Իսկ Եղիազար եկեալ, ի ճանապարհին հանդիպեցաւ Ս. Գրիգորի եւ Տրդատայ եւ խրնդացեալ յոյժ դարձաւ զկնի նոցա մինչեւ ի Հռոմ քաղաք։ Եւ անդ կացեալ բազում աւուրս, ապա խնդրեաց (°) է Նշխարաց Ս. Առաքելոցն մասն ինչ, զոմանս յետոյ Անդրէի առաքելոյն եւ Ղուկասու աւետարանչին։„ (Էջ 14։) Առնելով իրենց հետ այս բոլորը՝ մեծաւ խնդութեամբ դառնում են իրենց աշխարհը, եւ Տրդատ անցնում գնում է "Այրարատեան քաղաքը։„ — "Իսկ Ս. Գրիգոր մնաց ժամանակս ինչ ի Տարօն՝ ընդ իւր ունելով զնշխարս Ս. Առաքելոցն, դադարեալ աւուրս քսան եւ հինգ ի վանս Գլակայ (sic!) յիննակնեան տեղին Գիսանեայ կռոցն, ի կայեան Նշխարաց Ս. Կարապետին . . . ։„ Այստեղ Ս. Գրիգոր՝ մնալով եկեղեցին, տարածում է իւր ձեռքերը Ս. Առաքելոց նշխարների առաջ եւ աղօթում Աստծուն, որ պատշաճաւոր տեղ ցոյց տայ ամփոփելու դոցա։ Աղօթքից յետոյ երեւում է հրեշտակը եւ ասում, որ նա գայ Տաւրոս լերան ստորոտը, "ուր եւ հաճե-

յառ Տէր ընակիլ սրբոցդ:„ Այնտեղ Լուսաւորիչ շինում է վկայարան եւ ամփոփում Ս. Առաքելոց նշխարները. — "եւ կարգեալ անդ պաշտօնեայս եկեղեցւոյն արս երկոտասան եւ եա զանեղէն զայն Եղիազարու եւ անուանեցին զնա Եղիազարու Վանք:„ (էջ 16:)

Այդ միջոցները վերոյիշեալ Բեկտորին եւ Անատասին Բիւզանդիոնում Տարօնի Աշտիշատից գնացած մի քանի անձինք "տային զոյց զառաջին պատերազմէն՝ մինչ գայր Ս. Գրիգոր ի Տարօն, եւ թէ զիարդ դարձան նոցա ընդդէմ քուրմքն՝ որ ի տեղիսն Գիսանեայ: Նոյնպէս եւ զերկրորդ պատերազմն, որ եղեւ ընդ Տրդատ եւ ընդ իշխանն Հիւսիսոյ:„ — Այս լսելով՝ Բեկտոր, Անատաս եւ Աքիւղաս եւ Մարկեղիոս կրօնաւորները շատ զարմացան եւ գրեցին թուղթ Ս. Գրիգորին:

Գ. Թուղթ. (էջ 16—17:) Ցիշեալ կրօնաւորները հաղորդում են Լուսաւորչին, որ նորա թուղթը (անշուշտ այն՝ որ նա ուղղել էր Եղիազարին եւ Տիմոթէոսին) կարդացին իրենք Հռոմ քաղաքում, բայց չկարողացան գալ Հայոց երկիրը Եղիազարի պատճառով, որ շրջում էր Միջագետքում, եւ ապա Երուսաղէմ գործ ունենալով՝ գնացին այնտեղ: Այժմ իրենք Բիւզանդիա են գտնվում, իսկ Տիմոթէոսը՝ Եգիպտոս, որին սպասելով, շարունակում են մնալ Բիւզանդիա: "Արդ մեք վասն այդր դանդաղեմք գալ (ի Հայս), աւելացնում են կրօնաւորները, զի երկիրդ հեռի է եւ մեք անկար ի նուաղ կենայս եւ ի պանդխտութենէ . . . :„ Այստեղ եւս, որպէս եւ նախընթաց երեք թղթերում, առաջ է գալիս դարձեալ իննսունեան վանք. "բայց արդ աղաչեմ զքեզ, աւարտում են իրենց թուղթը կրօնաւորները, երջանիկ մշակդ Աստուծոյ, զի հրամայեսցես միում ի պաշտօնէիցդ քոց՝ մեզ գրել առաքել զուցատրութիւն ձերում ճանապարհորդութեան եւ զգալն յերկիրդ Հայոց

եւ զառաջին պատերազմն որ է ի Հռոմոց անդի, եւ զեր-կրորդ զայն ի Հռոմայ եւ զայն պատերազմն՝ որ ի Հիւսիսականաց անտի եւ [illegible] զոր պատմեալ են, եթէ որք եղեն եւ կամ զո՞ր պատմեսցեն թողեալ են առ նա ... եւ զկրօնաւորս եւ զԱնտոն մեր եւ թողեալ ... եւ կամ զինչ եղեւ Եպիփան աշակերտ նոցա, եւ կամ մեր Նշխարք են Զենոբ։ Զայս ա-մենայն սուտ գրեալքս առ մեզ աղաչեմք, զի յերթալն մեր առ Տիմոթէոս եպիսկոպոս՝ մարթասցուք տեղեկացուցանել գնոսա գրով։„

Այս միեւնոյն խնդիրն է, որով դիմել էր Ս. Գրիգորին Ղեւոնդիոս Հայրապետը (Բ. Թուղթ) եւ որը խիկապէս ծրագիր է Զենոբի պատմութեան։

Պատասխանի Զենոբայ ցուցանել շարադրեալ Պատմութեանն. (էջ 19։) Զենոբ հաղորդում է Ասորի եպիսկոպոսներին, թէ Ս. Գրիգոր հրամայեց իրեն գրել իրենց խնդրած հարցերի մասին։ "Եւ դուք, գանգատիք է նոցա Զենոբ, մի ինչ աղարտէք զսակաւ պատմութիւնս կամ եթէ Աթոռակալութեան Հայոց ոչ ձեզէ. զի ես յառաջագոյն գրեցի ձեզ զնա։ Եւ որ զԹագաւորաց ժամանակն չգրեցի, վասն զի Ս. Գրիգոր ոչ հրամայեաց ոչ այլ ինչ աւելի գրել քան զհայցուածն ձեր. մանաւանդ պատշաճ համարեցաւ զարշակունի եւ զքաջ Բագարատունեաց եւր Թագաւոր տանն Հայոց եւ ձեզ պատճէն պատասխանւոյ գրել, զոր ինքն անուանեաց Ս. Գրիգոր զայս պատճէն՝ Ասորոց Պատմութեան։„

Թղթերում հաղորդած շատ հանգամանքների անտեղութիւնը աններեւ լինելով՝ ես կանգ կ'առնեմ միայն մի քանի եւ գլխաւոր խնդիրների վերայ, որոց պարզելը անհրաժեշտ է։

1. Իննակնեան կամ Գլակայ վանքը, որի հետ սերտ կապուած է նաեւ Զենոբ Գլակի խնդիրը։

2. Լուսաւորչի ձեռքով Հռոմից Անդրէի եւ Ղուկասու առաքելոց նշխարները Հայաստան

բերելը եւ Եղիազարու վանք հիմնելը։ Ո՞վ էր Եղիազար եւ իւր ընկերը Տիմոթէոս։

3. Մի շարք Ասորի կրօնաւորներ եւ նոցա անյագ ցանկութիւնը Հայաստանում կատարուած անցքերի մասին մանրամասն տեղեկութիւն ունենալու։

4. Որքան սուտ է Զենոբի Առաջաբանը։

1. Նախապէս դիտելու է, որ Տարօնի Աշտիշատում՝ Դ. դարում, դեռ Լուսաւորչի օրով, ոչ պակաս քան երեք քրիստոնէական սրբավայրեր կային Բիւզանդի ասելով, որ հաստատվում է միւս մատենագիրներից եւս, — դոքա էին. — Ա. "Մեծ առաջին մայրն եկեղեցեաց Հայոց, որ էր յերկրին Տարօնու, ուր նշանօքն եղելոց կործանեցան բագինք մեհենիցն յայնժամ վաղ եւս առ մեծաւն քահանայապետաւն Գրիգորիւ[1]" կամ — "Մեծ եւ նախաւաջին եկեղեցին ի մայր եկեղեցեացն ամենայն Հայաստանեաց (ի Տարօն)։ —"[2]

Այս նոյն եկեղեցին է, որի գոյութիւնը հաստատում է Ագաթանգեղ՝ "Ս. Երրորդութիւն" անուանելով նորան։ "Եւ եդ (Գրիգոր) անդ (ի տեղի մեհենիցն որ յԱշտիշատ Տարօնոյ) զհիմունս եկեղեցւոյն, եւ ուղղեաց սեղան փառաց Քրիստոսի։ Զի նա անդ արար սկիզբն շինելոյ եկեղեցեաց եւ ուղղել սեղան յանուն Ս. Երրորդութեան եւ կազմել աւազան մկրտութեան։"[3]

Բ. "Նոյնպէս ի ներքոյ քան զնա" (զառաջին եկեղեցին ի մայր եկեղեցեացն ամենայն Հայաստանեաց) — շարունակում է անմիջապէս Բուզանդ, ուրեմն ոչ հեռի նորանից՝ էր — "Մարգարէանոցն Յովհաննու,"[4] որ ուրիշ տեղ նոյն պատմիչը "Մեծ մարգարէարան Մկրտչին Յովհաննու"[5] է անուա-

[1] Բուզանդ, էջ 7 (տպ. Վենետիկ, 1832)։
[2] Անդ. էջ 36 (նոյնպէս էջ 42, 48, 74, 114)։
[3] Ագաթանգեղ, էջ 610։
[4] Բուզանդ, էջ 6։
[5] Անդ. էջ 7։

նում, «Մեծ մարգարէանոց Յովհաննու, որ նախ շինեալ տուն աղօթից եւ խնդրուածոց ի հանգիստ սրբոցն,»[1] եւ կամ — «Վկայարան սրբոց վկայից» (Յովհաննու եւ Աթանագինեայ)։[2]

Ագաթանգեղ դարձեալ հաստատում է Բուզանդի աւանդածը. Նա պատմում է, որ Լուսաւորիչ Յունաց երկրից (Կեսարիայից) վերադառնալիս՝ բերեց իւր հետ նշխարներ «Մեծի մարգարէին երանեալ Մկրտչին Յովհաննու եւ զսուրբ վկայն Քրիստոսի զԱթանագինէան։» — Երբ որ եկան Տարօն եւ հասան Աշտիշատի մեհեանների հանդէպ՝ Եփրատի մօտ, — Գրիգոր կամենում էր կործանել բագինները եւ «շինել զվկայարանն նոցա (նշխարաց)։»[3] — Այս տեղ՝ մի ձորակի մէջ հրեշտակի ցուցմամբ՝ Լուսաւորիչ զօրքի օգնութեամբ «շինեցին զվկայարանն եւ զսուրբսն ի հանգիստ փոխեցին։»[4] — Այստեղ մնաց Գրիգոր 20 օր «եւ կանգնեաց սեղան ի վկայարանն սրբոցն հանգստին, զոր շինեացն . . .։»[5]

Խորենացին եւս ձայնակից է Տարօնի Ս. Յովհաննու «Վկայարանի» մասին։[6]

Այս՝ ինչպէս երեւում է, լոկ վկայարան կամ մատուռ էր, յամենայն դէպս միայն եկեղեցի. Վանքի մասին դեռ չկայ ոչինչ ակնարկութիւն։ Այս երկուսից զատ՝ Բուզանդ յիշում է եւ երրորդը, որ գուցէ Լուսաւորչից յետոյ լինի շինուած։ — . . . «Նոյնպէս մօտ ի տուն Տեառն, շարունակում է Բուզանդ իւր նկարագրութիւնը վերյիշեալ հատուածում[7] — էր «Հանգիստ առաքելոցն», — որ ուրիշ տեղ նաեւ «Առաքելարանք Տեառն աշակերտացն»[8]

1 Անդ. էջ 44։
2 Անդ. էջ 114։
3 Ագաթանգեղ. էջ 607։
4 Անդ. էջ 608։
5 Անդ. էջ 610։
6 Խորենացւոյ Պատմ. Հայոց, Գ. 2։
7 Բուզանդ, էջ 36։
8 Անդ. էջ 7։

վանահայրը — Լուսաւորչին ժամանակակից եւ նորա մերձաւոր օգնականը, նաեւ պատմագիր Իննակնեան տեղւոյն: Սակայն վանքը, որ անսովոր անունով Գլաք էր կոչվում արդէն, հեղինակի կարծիքով՝ իւր կոչումը անպատճառ իւր հիմնադրից պէտք է ստացած լինէր. պէտք էր ուրեմն աւելի գործածական՝ Ասորի կամ Յոյն անուն տալ առաջին վանահօրը, իսկ Գ լ ա կ ը նորան մականուն կամ աւել անուն չինել: Եւ ահա Զէնոբ անուան վերայ է ընկնում հեղինակի ընտրութիւնը՝ գուցէ Նիկիոյ ժողովի Ասորի հայրապետների ցուցակից հանուած[1], որից առնուած են թվում ինձ՝ բաց ի դորանից, մեր հեղինակի գրուածում յիշուած եւս չորս կրօնաւորների անունները. այն է՝ [illegible] (քորեպիսկոպոս Խուրացւոց ի Նիկիոյ ժողովէն), [illegible] (եպիսկոպոս ի [illegible] քաղաքէ), [illegible] (եպիսկոպոս Աղեքսանդրիայ), [illegible] (ի Կիբիստրոնէ Գամրաց): Զէնոբէոս անունով յայտնի էր նաեւ Ս. Եփրեմի աշակերտներից մէկը:

Վերջապէս Բուզանդի յիշած "Առաքելարանք" կամ "Հանգիստ առաքելոց", որ հեռու չէր "Մարգարէարան մատուռից", — Զէնոբի գրուածում դարձեալ [illegible] է դառնում, որ իբր թէ ինքը Լուսաւորիչ հիմնեց, ուր եւ ամփոփեց, Զէնոբի ասելով, Հռոմից իւր հետ բերած [illegible] առաքեալի եւ [illegible] աւետարանչի նշխարները՝ յանձնելով վանահայրութիւնը Զէնոբի եղբօր [illegible]. սորա անունով եւ վանքը կոչուեց "Եղիազարու վանք:" Տեսնենք, որքան ստոյգ է այս:

2. Լուսաւորչի ձեռքով Հռոմից Անդրէի եւ Ղուկասու առաքելոց նշխարները Հայաստան բերելու մասին, որքան ինձ յայտնի է, Զէնոբի պատմութիւնն է առաջին յիշողը, եւ այն՝ տարբեր

[1] [illegible]. կանոնք Նիկիոյ մեծ ժողովոյն ([illegible]):

մանրամասնութիւններով. Վենետկեան տպագիրը ունի այսպէս, ինչպէս գրուած է վերը. մի քանի ձեռագիր (ԺԳ. եւ ԺԵ. դարու), որպէս եւ Ուխտանէս[1] ունին "... եւ խնդրեալ Ս. Գրիգորի (ի Ս. Հայրապետէն Հռոմայ) մասն ի նշխարաց Ս. Առաքելոց Պետրոսի եւ Պօղոսի ... եւ զաջեան ձեռն Անդրէի առաքելոյն": Ղուկաս Աւետարանչի մասին սոքա լռում են:

Չկամիմ այս առթիւ երկար քննադատութեան մէջ մտնել. այսքան միայն կը նկատեմ, որ այսպիսի մի կարեւոր եւ առաջնակարգ իրողութիւն հայ եկեղեցւոյ կեանքում, ինչպէս է Առաքելոց նշխարների Հայաստան տեղափոխումը, անկարելի է որ աչքից փախցնէին Ագաթանգեղ կամ Խորենացի, մանաւանդ առաջինը, որ բաւական մանր նկարագրում է Տրդատի եւ Լուսաւորչի Հռոմ գնալն ու վերադարձը եւ այնտեղից բերած պարգեւները. — "բերէին զպարգեւս բերեալս անդրատին, զոսկին եւ զարծաթն եւ զպատուական կարասին նաեւ զոսկի սպաս կայսերն ի նոյն հանգիստ սրբոցն դնէին:"[2] — Ինձ թւում է, թէ առաքելոց նշխարների աւանդութեան առաջանալուն կարող էր տեղիք տուած լինել՝ ի միջի այլոց, նաեւ Բուզանդի "Առաքելարանք" կամ "Հանգիստ Առաքելոց" յիշատակութիւնը, որ հետզհետէ մշակուելով, թերեւս ոչ առանց ազգային աւանդութիւնների ազդեցութեան, սկզբում՝ գուցէ Զենոբի գրչի տակ, Անդրէի եւ Ղուկասու նշխարներովն է սահմանափակուել եւ վերջը ուրիշներից ծա-

[1] Ուխտանէս, Ա. էջ 108: — Յար եւ նման Ուխտանէսին ունի եւ "Դաշանց թուղթը" (տպ. Պոլիս, 1824, էջ 345): — Վարդան (էջ 57) միայն "լուսաւոր ակունսն" է յիշում, զոր էր "առեալ նա (Ղեւոնդի) Հայրապետէն Հռոմայ", իսկ առաքելոց նշխարների մասին՝ երեւի Խորենացու ազդեցութեամբ, լռում է: — Կիրակոս (էջ 7, տպ. Մոսկուա) անորոշ է յիշում. "մասն ինչ ի նշխարաց առաքելոցն եւ զաջեան ձեռն Անդրէի առաքելոյ:"

[2] Ագաթանգեղ, էջ 649—656:

խացուել Պետրոսի եւ Պօղոսի մասունքներովն եւս։ — Արդէն Հռոմ ստէպ յիշատակութիւնը[1], ի դէպ թէ անդէպ, Զենոբի Պատմութեան մէջ եւ յատկապէս Պօղոս եւ Պետրոս առաքեալների նշխարների Հայաստան բերելու աւանդութիւնը, որպէս եւ Առաջաւորաց պահոց Հռոմայ Սեղբեստրոս հայրապետից ընդունուելն ու հաստատուելը, իմ կարծիքով՝ յետ ժամանակի (Թ—Ժ. դարու) ազդեցութեան նշան համարելու է։

Գալով Եղիազարի անուան եւ անձնաւորութեան, դա նոյն եւ մի ծագումն եւ վիճակն ունի՝ ինչպէս եւ Զենոբ. ի զուր չէ նոցա հարազատութիւնը։ Սակայն Եղիազար հասարակ կրօնաւոր չէ. նորան աշխարհից աշխարհ որոնում են, մարդիկ են ուղարկում նորա հետքից Երուսաղէմ, Հռոմ, Եգիպտոս։ Մինչդեռ իւր Զենոբ եղբայրը մերձաւոր օգնական էր Լուսաւորչին եւս եւ հեղինակ “Ասորոց պատմութեան„, Եղիազար՝ Զենոբի ասելով, “գնացեալ էր ի Միջագետս Ասորոց ընդ Բարթող-մնաբեան եբրայական մարգարէից„, — որ՝ ի հարկէ՝ դժուար է թոյլ տալ, քանի որ Աստուածաշնչի ասորական թարգմանութիւնը (եթէ դորա վերայ է ակնարկում հեղինակը) Դ. դարուց վաղ կատարուած էր արդէն. մանաւանդ որ այսպիսի մի հռչակաւոր գործի եւ թարգմանիչ կրօնաւորի մասին զլանում են որ եւ է տեղեկութիւն տալու եկեղեցական պատմագիրները։ — Եւ ինչո՞վ է վերջանում Տրդատի եւ Լուսաւորչի անդադար խոյզ ու խնդիրը եւ անյագ փափագը Եղիազարին Հայաստան կոչելու. նա վանահայր է նշանակվում մի վանքի՝ իւր գործունէութիւնը բոլորովին անյայտ մնալով տոհմային պատմութեան։

Ինչպէս ասացի, Զենոբ եւ Եղիազար վիճակակից են. Գլակայ վանքի մօտ կար ի հնուց Ղա-

---

[1] Համ. Զենոբ. էջ 11, 14, 16, 17, 23, 24, 49.

զարու կամ Եղիազարու վանք, որին ժամանակակից էր Զենոբի պատմութեան հեղինակը։ Արդ՝ որովհետեւ Գլակայ վանքը՝ ըստ հայեցողութեան հեղինակին, իւր կոչումն ստացել էր իւր առաջին վանահայր Զենոբի ազգ-անունից, պէտք է որ Եղիազարու վանքն եւս իւր առաջին վանահայրը ունենար Եղիազար անունով, նոյնպէս ժամանակակից Լուսաւորչի՝ նոյնպէս Ասորի. եւ ինչու նա անգամ նոյն Զենոբին եղբայր եւս չլինի, քանի որ դոցա երկուսի վանքերն եւս այնքան մերձաւոր դրացիութիւն ունէին։

Այսպիսի տրամաբանութեան շնորհիւ՝ ըստ իս՝ կարող էր առաջանալ Եղիազար անձնաւորութիւնը՝ զուգընթաց Զենոբ անուան։ Իսկ Եղիազարու որպէս եւ Գլակայ վանից հիմնարկութիւնը անշուշտ Դ. դարից բաւական յետոյ դնելու է։

3. Վերաբերութեամբ միացեալ կրօնաւորների, որոնց յիշում է Զենոբ իւր Պատմութեան մէջ, — դժուար է դոցա մասին որոշ ինչ ասել. միթէ էին այդ Աֆթենոս, Անտոնոս, Ակեփոս (Ակակիոս որդեակ կամ Ակեսիոս, ժամանակակից Պարսից Շապուհ արքայի, որ պատահում է Սոկրատի Եկեղ. պատմ. մէջ — Ա. 10), Դիմոթէոս (որդեակ Դղքիանոս Եւսեբիոսի Եկեղ. պատմ. — Ե. 12), Մարկեղլոս, Մեհնդրոս աղանդաւոր, Պետրոն թարգմանիչ սորա, Սարգիսոս. Սիմոնոս անունով Երուսաղէմի եպիսկոպոս (Զենոբ, էջ 17) արդարեւ յիշում է Եւսեբիոս իւր Եկեղեցական պատմութեան մէջ (Դպ. Ե. գլ. 12), բայց նա՝ ըստ երեւութին, Լուսաւորչին ժամանակակից չէր կարող լինել։ Իսկ Եղիազարի ընկերակից Տիմոթէոս, որ հաւաք Լուսաւորչի բաղձանքերն եւ աղերսանքերն՝ չկարողացաւ Հայաստան գալ, — պատրաստ էր՝ Զենոբի ասելով՝ Երուսաղէմի կողմերը “զնոյն Աւետարանին Բարթողիմէոսի ի հեղինակին էր„, — որ նոյնպէս կասկածելի է, ինչպէս եւ Եղիազարի թարգ-

մանչական գործունէութիւնը։ Տիմոթէոս անունը հեղինակը կամ Նիկիոյ ժողովի ցանկից կարող էր առած լինել, ինչպէս ասացի վերը, եւ կամ թերեւս մի կերպ իմացած համանուն գիտնական Արիանոսեան աւագերէցի մասին, որ ջերմ հետեւող էր Որոգինէսի եւ հմուտ Ս. Գրոց մեկնութեան, ինչպէս աւանդում է Սոկրատ (Է. 6), թէեւ այդ անձը Լուսաւորչից բաւական ուշ պէտք է ապրած լինի։

4. Ի վերջոյ անցնելով Զենոբի Առաջաբանին, այստեղ եւս նկատում ենք անհաւատալի եւ անտեղի կէտեր, որոնք մատնում են նորա բանագողութիւնը։

Նախ՝ ի՞նչ կը նշանակէ հեղինակի այսպիսի միամիտ խոստովանութիւնը՝ — "Եւ դուք մի աղարտէք զսակաւ Պատմութիւնս, կամ թէ Ագաթանգեղոս զայդ ոչ գրէ, զի ես յառաջագոյն գրեցի քան զնա"։ — Կարելի՞ է արդեօք թոյլ տալ այսպիսի մի անհեթեթ երեւոյթ, որ աւելի վաղ ժամանակագրողը իրենից յետոյ հեղինակողի մասին վկայէր։ Այս՝ յետնոց ընդմիջարկութիւն կամ աղաւաղումն չէ, ինչպէս կարծեցին Հ. Գ. Զարբհանալեան[1] եւ Լանգլուա[2]. այդ պատճառաբանութեան վերայ են հիմնուած Առաջաբանի յաջորդ տողերը մինչեւ նորա վերջը. մանաւանդ որ այնպիսի մի դիտողութիւն անում է հեղինակը նաեւ 22որդ երեսում. "...Որպէս Ագաթանգեղոս պատմէ զայսոսիկ". որից դարձեալ պարզ է՝ որ հեղինակը լաւ ծանօթ է Ագաթանգեղին։ Այդ ծանօթութիւնը՝ իբրեւ բանագողութիւն, մենք արդէն ցոյց տուինք վերը՝ համեմատութիւնների շարքում։

Յետ այնորիկ՝ ի՞նչպէս պէտք է հասկանալ հեղինակի ասածը. "եւ որ զթագաւորաց ժամա-

---

[1] Պատմ. հայերէն Դպր. Բ. տպ. էջ 217։
[2] Collection, I, 336.

նակն չգրեցի, վասն զի Ս. Գրիգոր ոչ հրամայեաց այլ ինչ ուսելի գրել քան զհայցուածն ձեր. մանաւանդ զի պատշաճ համարեցաւ զարշակունի եւ զքաջ թագաւորացն զիր Բուզանդ տանս Հայոց եւ ձեզ պատճէն պատասխանւոյ գրել, զոր ինքն անուանեաց . . . Լօրոց Պատմութիւն"։ — Հարկ կայր արդեօք տարակուսել՝ թէ "զթագաւորաց ժամանակն չգրեցի". ո՞վ էր հեղինակից այդ պահանջողը։ Պարզ է, որ նա՝ ծանօթ լինելով Ագաթանգեղին, տեսել էր եւ գիտէր, որ նա թագաւորների մասին էր պատմում (Արտաւան, Խոսրով, Արտաշիր, Տրդատ, Կոստանդիանոս) եւ այս տողերը գրում է նորա պատմութեան ազդեցութեան ներքոյ՝ անգիտակցաբար։ Նոյնպէս՝ ինչ էր այդ "արշակունի քաջ թագաւորաց գիրք", որ Լուսաւորիչ պատշաճ համարեց "Բուզանդ տանս Հայոց", եթէ ոչ դարձեալ նոյն Ագաթանգեղ։ Եւ ինչ կը նշանակէ "Բուզանդ տանս Հայոց". — եթէ կար այդպիսի մի "գիր (Պատմութիւն) թագաւորաց", միթէ չէր կարելի ամբողջապէս արտագրել նորան եւ ուղարկել Լօրի կրօնաւորներին "պատճէն պատասխանւոյ" հետ միասին։ — Փոքր ինչ ստորեւ՝ Առաջին Պատճէնի վերջը (էջ 39) յիշած հեղինակի անորոշ ակնարկութիւնն եւս — "որ զկնի այսոցիկ (այն է՝ Գրիգորի Կեսարիայից վերադարձից, Գիսանէ եւ Դեմետր կուռքերի կործանումից եւ Իննակնեան վանքի հիմնարկութենից յետոյ) զայն Բուզանդ տալոց պատմեսցէ մինչեւ դարձեալ կրկին դառնալ պատմութիւնս ի Տարօն . . . " — պարզ ցոյց է տալիս, թէ Զենոբ միայն Ագաթանգեղին ունէր ի նկատի։ Արդարեւ-սա "զկնի այսոցիկ" — իբր ՃԺԶ գլխից (611 երեսից) սկսած — աւանդում է այն անցքերը, որ բաց է թողել Զենոբ, ի հարկէ գիտամբ, իւր Պատմութեան մէջ. — Լուսաւորչի վերադարձը Այրարատեան աշխարհ, Ղեւոնդիոս հայրապետի թուղթը (որ Ագաթանգեղ "Պ ա տ ճ է ն թ ղ թ ո յ ն"

Պատասխանի՛„ է կոչում), Տրդատի, արքունեաց, նախարարների եւ զօրքի մկրտուելը, եկեղեցական եւ դպրոցական բարեկարգութիւններ, Լուսաւորչի առանձնանալը, Ռստակէսի եպիսկոպոս՝ եւ փոխանորդ կարգուելը։ Այնուհետեւ ԺԻԵ գլխից (645 երեսից) Զենոբ "դարձեալ կրկին դառնայ„ Ագաթանգեղի օգնութեան իւր երկրորդ Պատճէնի համար (էջ 40), որը, ինչպէս եւ Ագաթանգեղի ԺԻԵ գլուխը, սկսվում է Կոստանդիանոս կայսեր պատմութեամբ։

Վերջապէս ինչու Զենոբի գրած թուղթը Լուսաւորիչ "Ասորոց Պատմութիւն„ պէտք է անուանէր, քանի որ այդ լոկ թուղթ էր միայն Ասորի եպիսկոպոսներին՝ Հայաստանում կատարուած մի քանի անցքերի մասին։

---

## Եզրակացութիւն։

Բոլոր մինչեւ այժմ ասածներից կարելի է եզրակացնել։

Ա. Զենոբի Պատմութեան հեղինակը անտարակոյս ծանօթ էր Ագաթանգեղի, Բուզանդի, Խորենացու նաեւ Սեբէոսի գրուածքներին. ապա ուրեմն նա կարող էր ապրած լինել **ոչ յառաջ** Է. դարը, եւ ոչ մի կերպ Դ. դարու հեղինակ լինել, մանաւանդ թէ Լուսաւորչին մերձաւոր անձն։

Ենթադրել ընդհակառակը, այսինքն, թէ՝ Զենոբի Պատմութենից են փոխ առել յիշեալ մատենագիրները, — բացի սոցա **միաբերան լռութենէց** Զենոբի մասին, որ շատ կարեւոր ապացոյց է, եւ միւս կողմանէ՝ **փոխադարձ վկայութենէց** իրար գոյութեան մասին, — սոցա գրուածքներն եւս **ներդաշնակ ամբողջութիւն** են կազմում պատմուող նիւթի

¹ Համեմ. Զենոբի խորագիրների հետ, էջ 7, 9, 40։

մասին եւ տրամաբանական կապով կապում նոյն պատմութեան զանազան մասերը: Մինչդեռ Զենոբի պատմածը հում ու չոր է, պատառ պատառ եւ նկատելի կերպով ամբողջութենից քաշած, համամուրացածոյ կտորներ, որոնք միայն արուեստապէս՝ նաեւ բռնազբօս կերպով կցուած են իրար հետ, ինչպէս տեսանք վերը՝ համեմատութիւնների մէջ:

Բ. — Այն կէտերում, ուր Զենոբ տարբեր կամ անհամաձայն է իւր իսկական աղբիւրներին, նա կամ ազգային եկեղեցական յ ե տ ի ն աւանդութիւններին աղօտ արձագանգ է, եւ կամ առաւել եւս՝ դիտմամբ անհամաձայնութիւններ է առաջացնում իւր իսկական աղբիւրներին չնմանուելու, ուրեմն եւ իւր մուրացութիւնը քօղարկելու նպատակով:

Գ. — Իննակնեան կամ Գըլըկայ վանքը առանձին խնամքի եւ ուշադրութեան արժանացած լինելով հեղինակի կողմից, նա ամէն կերպ ջանք է անում սորա հնութիւնը մինչեւ Լուսաւորիչ եւ Տրդատ հասցնել, որպէս եւ վանքային կալուածների սրբաշակի նշանակուած սահմանները անպատճառ Հայաստանեայց եկեղեցու առաջին հիմնադիրներից հաստատուած տեսնել, — որ հակառակ է արժանահաւատ աղբիւրներին:

Դ. — Թղթերէ չորս Պատճէնները շինուած են նմանութեամբ շատ այդպիսի գրուածների,[1] թէեւ բաւական անհմուտ:

Ե. — Զենոբի անուամբ "Ասորոց Պատմութիւնը„ նախընթաց փաստերի հիմամբ անվաւեր համարելու է, որպէս եւ "Զենոբ„ կոչումը՝ կեղծ — անշուշտ Դ. դարուց բաւական ուշ կազմուած:

Զ. Վերջապէս յետ մղելով Զենոբի Պատմութիւնը Դ. դարից դէպ ի Է.-Թ. դարը, — կարող ենք մատնանիշ լինել եւ այն հեղինակի

[1] Օրինակի համար՝ համեմատէ "Զգօնի„ սկզբում մէջ բերած Ցակոբին ուղղած Լուսաւորչի Թուղթը:

*վերայ, որին հաւանականօրէն պատկանում է այդ-անվաւեր գրուածքը. դա՝ «Տարօնոյ Պատմութեան» հեղինակ Մամիկոնեան եպիսկոպոս Յովհաննն է, որի գրութեան ոչ միայն լեզուն եւ ոճը, այլ եւ ուղղութիւնը, միտումները, հայեցակէտը եւ նպատակները նոյն եւ մի են, ինչ որ տեսանք Զենոբի Պատմութեան մէջ: Ասորերէնից հայերէն թարգմանելու մասին ուրեմն բնաւ խօսք չէ կարող լինել այստեղ: Չ'արժէ օրինակներով ստուարացնել յօդուածիս սահմանափակ էջերը. բաւական է անաչառ բանասիրին փոքր ինչ քննողական աչքով դիտել այս գրուածքները, որպէս զի նա համոզուի, թէ երկուսն եւս համատիպ եւ համանման են՝ միեւնոյն հեղինակի գրչի, մտքի, եւ նպատակի արգասիք:*

*Մոսկուա, 2 Յունիսի 1893*

Գր. ԽԱԼԱԹԵԱՆ



Էջ 48, տող 21 աւելացնելու է.

Մեծին Ներսէսի պատմութեան մէջ ևս մի քանի օրինակներ յիշում են Ո-ւ-ք-է- անունով Վրաց նահապետ, որ անշուշտ Դ. դարու վերջերին պետք է վերաբերուի: (Ս-փեր-, Զ, էջ 53:)

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ . . . . . . Փր. 1.25

Բ. ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ ՏԻՒԶԵԱՆՑ . . . . . . . Փր. 1—

Գ. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ ԱՌ ԳԷՈՐԳԱՅ ԱՍՈՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ ԳՐՈՑ Փր. 1.25

Դ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ Փր. —.85

Ե. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ՍՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ . . . . . . . . . . . Փր. 3.—

Զ. ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ Փր. 1.—

Է. ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԴԷՊ Ի ՀԱՅՍ . . . . . . . . Փր. 1.25

Ը. ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ. . . . . . . . . . Փր. 1—

Թ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԼՐԱԳՐՈՒԹԵԱՆ Ա. ՀՏՐ . . . . . . . . . . Փր. 2.50

Ժ. ՔՆՆՈՒԹԻՒՆՔ ԳՐՈՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ . . . . . . . . . . Փր. 1.25

ԺԱ. ՀԱՅՔ ՅԵՂԻՍԱԲԵԹՈՒՊՈԼԻՍ ԴՐԱՆՍԻԼՈՒԱՆԻՈՅ Ա. ՀՏՐ. . . . . . Փր. 4.50

ԺԲ. ԶԵՆՈԲ ԳԼԱԿ . . . . . . . . Փր. 1.—

